Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 3 (57)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ հրատարակչություն—
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ— 1939

*Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք*

Հ Կ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 3 (57)

Հայկական ՍՍՀ ԺԿԽ Հրատարակչություն—
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1939

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### I. ԸՆԿԵՐ ՍԵՐԳՈ ՈՐՋՈՆԻԿԻՁԵՅԻ ՄԱՀՎԱՆ 2-ՐԴ ՏԱՐԻՆ



### II. ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ 21-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ



### ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑ




Պատ. խմբագիր՝ Գ. ՍԻՆԱՆՅԱՆ


ԸՆԿԵՐ ՍԵՐԳՈ ՈՐՋՈՆԻԿԻՁԵՅԻ ՄԱՀՎԱՆ ՅԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻՆ

# ԳՐԻԳՈՐԻ ԿՈՆՍՏԱՆՏԻՆՈՎԻՉ (ՍԵՐԳՈ) ՈՐՋՈՆԻԿԻՁԵ

## ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Երկու տարի առաջ 1937 թ. փետրվարի 18-ին մեր կուսակցությանը, մեծ սոցիալիստական հայրենիքի՝ ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգին ու աշխատավորներին, ամբողջ աշխարհի աշխատավորներին մեծ վիշտ պատեց: Սրտի կաթվածից հանկարծամահ յեղավ ընկեր Սերգո Կոնստանտինովիչ Որջոնիկիձեն: Երկու տարի յե չկա այլևս Սերգո Որջոնիկիձեն, բոցավառ, անվեհեր լենինյան բոլշևիկը, միլիոնավորների սիրած ղեկավարը, Լենինի ու Ստալինի զի-

նակիցը, Համամիութենական Կոմունիստական կուսակցության Կենտրոնական Կոմիտեի Քաղբյուրոյի անդամը, հաղթական սոցիալիստական արշավի ամենատաղանդավոր կազմակերպիչը, Ծանր Արդյունաբերության ժողովրդական Կոմիսարը:

Այդ բյուրեղային անաղարտ, անհողդողդ բոլշևիկ հեղափոխականի կյանքն օրինակ է՝ սոցիալիզմի համար և իրենց ազատագրման համար մարտնչող ամբողջ աշխարհի աշխատավորներին: Խորհրդային ժողովրդի սիրելի Սերգո Օրջոնիկիձեն պատանի հասակից իր սիրտը, միտքը, ուժերն, անսպառ յեռանդն, իրե՛ն ամբողջապես, իր ամբողջ կյանքը նվիրաբերել էր բանվոր դասակարգի գործին, կոմունիզմի գործին: Նրա ամբողջ կյանքն անցավ կուսակցության աչքի առջև, բանվոր դասակարգի աչքի առջև, Լենինի ու Ստալինի, ՀամԿ(բ)Կ կենտկոմի ղեկավարության ներքո:

«Տարիներ ու հարյուրամյակներ կանցնեն, բայց չեն աղոտանա, այլ ավելի ու ավելի պայծառ կվառվեն Սերգոյի — պրոլետարական մեծ հեղափոխականի, կոմունիզմի անվեհեր ասպետի, մարդկության վերածնման ստալինյան դարաշրջանի յա-



վագույն մարդկանցից մեկի— անունն ու փառքը»:

(«Պրավդա»)

---

*Գրիգորի Կոնստանտինովիչ Օրջոնիկիձեն (կուսակցական մականունը Սերգո) ծնվել է 1886 թվականի հոկտեմբերի 28-ին (նոր տոմարով), Արևմտյան Վրաստանում, Գորեշա գյուղում:*

*Սերգոյի հայրն ուներ ընդամենը մի քանի դեսյատին ուժից ընկած հող: Եգիպտացորենը, էլ չենք խոսում մյուս բաների մասին, ընտանիքին բավականացնում էր միայն մի քանի ամիս: Հայրն ստիպված էր լինում դաշտային աշխատանքների միջև ընկած ժամանակամիջոցում աշխատելու գնալ Ջիաթուրի, որտեղ նա մանգանի հանքաքար էր փոխադրում: Սերգոյի մայրը ծննդաբերությունից կարճ ժամանակ հետո մահանում է: Երեք ամսական յերեխային իր խնամքին է վերցնում հորաքույրը, որը կերակրում է նրան և փոխարինում հարազատ մորը:*

*Յոթ տարեկանից Օրջոնիկիձեյին տալիս*

են Գորեշի ցեկեղեցական- ծխական դպրոցը, որն ավարտելուց հետո նա ընդունվում է Խաշուրիի երկաթուղային դպրոցը: Մեկ տարուց հետո, ընտանիքի թշվառ դրության հետևանքով, նա ստիպված է լինում թողնել դպրոցը և վերադառնալ գյուղ: Նույն ազգանունն ունեցող ժողովրդական ուսուցիչ Սիմոն Օրջոնիկիձեն Սերգոյին իր հետ տանում է Խոբի ավանը, որտեղ նա դպրոցի վարիչ էր: Այնտեղից նրանք փոխադրվում են Լանչխութ և վերջապես Խորագուլի: 1898 թվականին Սերգոն ավարտում է Խորագուլիի երկդասյան դպրոցը:

1900 թվականի աշնանը Սերգոյի հորեղբոր որդի Տարասի Օրջոնիկիձեն և ազգականներից մեկը՝ Պավել Մաճավարիանին նրան տանում են Թբիլիսի (Թիֆլիս): Այնտեղ նա սովորում է քաղաքային (Միխայլովի) հիվանդանոցին կից ֆելդշերական դպրոցում:

Ֆելդշերական դպրոցում սովորում էին գերազանցապես ժողովրդի ստորին խավերից ելածները: Ուսանողության մեջ կային ուժեղ հեղափոխական տրամադրություններ: Կազմակերպված էին սոցիալ-



դեմոկրատական խմբակներ, որոնցից մեկի մեջ մտնում է նաև Սերգո Օրջոնիկիձեն: 1901–1902 թվականներին նա արդեն մասնակցում էր դպրոցական սոցիալ-դեմոկրատական խմբակին:

1903 թվականին Սերգոն մտնում է ՌՍԴԲԿ-ի շարքերը, որպես բոլշևիկ: Սերգոյի ամբողջ հերոսական, հոյակապ կյանքն ընթացել է կուսակցության, բանվոր դասակարգի աչքերի առջև, Լենինի ու Ստալինի, ՀամԿ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեյի ղեկավարությամբ:

Ֆելդշերական դպրոցն ավարտելուց հետո, 1905 թվականի գարնանը Օրջոնիկիձեն վերադառնում է Արևմտյան Վրաստան, մասնավորապես Բաթումի: Նա ամենաակտիվ մասնակցություն է ունենում կուսակցական աշխատանքին: Նա պրոպագանդիստ է և ագիտատոր: Նա միտինգների և դիսկուսիաների կազմակերպիչ է մենշևիկների դեմ: Սերգո Օրջոնիկձեն իր բոլշևիկյան ելույթների մեջ ոգտվում էր ընկեր Ստալինի «Հարևանացիորեն կուսակցական տարաձայնությունների մասին» բրոշյուրից, որը գրվել է 1905 թվականի սկզբներին:

1905 թվականի սեպտեմբերին Օրջոնիկի-

ձեն փոխադրվում ե Գուդաուտի (Աբխազիա): Այստեղ նա տեղական հիվանդանոցում աշխատում ե վորպես բուժակ: Արդեն այդ շրջանում նա պրոֆեսիոնալ հեղափոխական եր, մարտիկ, վորի համար կյանքի իմաստը միայն հեղափոխության մեջ եր: Տասնինամյա պատանի Սերգոն արդեն Գուդաուտի կուսակցական կազմակերպության ընդհանուրի կողմից ճանաչված ղեկավար եր, կուսակցության Սուխումի օկրուգային կոմիտեի անդամ, ընդհատակյա աշխատանքի տաղանդավոր կազմակերպիչ և կրակոտ ագիտատոր:

Յերբ 1905 թվականի հոկտեմբերի 17-ի ցարական մանիֆեստի լուրը հասնում ե Գուդաուտ, Սերգո Օրջոնիկիձեն թռուցիկ միտինգ ե կազմակերպում քաղաքի կենտրոնում: Այդ միտինգում նա ունկնդիրների մասսային պարզաբանում ե, վոր միայն ցարի տապալումը և ինքնակալության վոչնչացումը կարող են իսկական ազատություն տալ: Վոստիկանությունն այն ժամանակ չհամարձակվեց ձերբակալել յերիտասարդ բոցաշունչ ագիտատորին:

Յերիտասարդ հեղափոխականի առաջին ձերբակալությունը տեղի յե ունենում Գու-



դաուտի մոտ գտնվող Բոմբորի գյուղում, 1906 թվականի հունվարի 5-ին: Սերգոն ձերբակալվում ե զենքը բռնաթափելու մոմենտին և բանտարկվում Սուխումի բանտում, վորտեղ մնում ե մինչև 1906 թվականի հունիսի 7-ը: Այնուհետև յերաշխավորությամբ բաց ե թողնվում և գնում ե Թբիլիսի: Այստեղ առաջին անգամ, բոլշևիկյան «Դրո» («Ժամանակ») թերթի խմբագրատանը հանդիպում ե ընկեր Ստալինին, վորն այդ թերթի խմբագիրն եր:

1906 թվականի ոգոստոսին Օրջոնիկիձեն, թաքնվելով պահնորդական բաժնից, մեկնում ե արտասահման՝ Բեռլին: Շուտով նա վերադառնում ե Ռուսաստան: 1907 թվականի մարտին մտնում ե Բաքվի բոլշևիկյան կոմիտեի մեջ, վորը ղեկավարում ե ընկեր Ստալինը, ու վորի կազմի մեջ մտնում եյին նաև Շահումյանը, Ջափարիձեն, Սպանդարյանը:

Բաքվի ժամանակաշրջանը խոշորագույն մի ուղենիշ ե հանդիսանում Օրջոնիկիձեյի՝ վորպես բոլշևիկյան կուսակցության ականավոր գործչի կազմավորման գործում: Բաքվի նավթահանքերը գալու առաջին իսկ որվանից նա հսկայական սեր ե վայելում

բանվորների մեջ, վորոնց կազմը ծայրահեղորեն բազմազան եր։ Այդտեղ կային ադրբեջանցիներ, ռուսներ, վրացիներ, հայեր։ Որջոնիկիձեն կարողանում ե ընդհանուր լեզու գտնել շահագործվող պրոլետարների այդ ամբողջ բազմացեղ մասսայի հետ, կարողանում ե նրանց համախմբել բոլշևիզմի լոզունգների շուրջը։ Բաքվում, լինելով Բալախանի շրջանի Ռոմանիի կուսակցական կազմակերպիչ, նա յեռանդուն կերպով նախապատրաստվում ե 1907 թվականի մայիսի մեկի մասսայական բանվորական ցույցին, ակտիվ մասնակցում ե 3-րդ Պետական դումայի ընտրական կամպանիային, յեռանդուն կերպով մերկացնում ե մենշևիկներին, դաշնակներին, եսերներին։

1907 թվականի նոյեմբերին Սերգո Որջոնիկիձեն ձերբակալվում ե վոստիկանության կողմից և նստեցվում Բայիլովի բանտը։ 1908 թվականի ապրիլի 9-ին Թբիլիսիի դատական պալատի հատուկ ատյանն Որջոնիկիձեյին դատապարտում ե բոլոր իրավունքներից զրկման և ցմահ աքսորի՝ Սիբիր։ Հոկտեմբերի 27-ին, նույն այդ Թբիլիսիի դատական պալատի հատուկ ատ



յանն Աբխազիայում կատարած հեղափոխական աշխատանքի համար նրան լրացուցիչ կերպով դատապարտում ե բերդարգելության մեկ տարի ժամանակով։

1909 թվականի գարնանը Որջոնիկիձեյին աքսորում են Սիբիր։ Աքսորավայր նշանակված եր Յենիսեյի նահանգի Պինչուգյան վոլոստի Պոտասկույ գյուղը։ Աքսորավայրը հասնելուց յերկու ամիս հետո Որջոնիկիձեն փախչում ե և վերադառնում Բաքու, անլեգալ պայմաններում շարունակելու համար կուսակցական աշխատանքը։

1909 թվականի աշնանը բոլշևիկների Բաքվի կազմակերպությունն Որջոնիկիձեյին ուղարկում ե Իրան (Պարսկաստան), Գիլյանի նահանգը, վորն այն ժամանակ հեղափոխական շարժման թատերաբեմ եր։ Այնտեղ նա ակտիվ մասնակցում ե հեղափոխական պայքարին։

1910 թվականի նոյեմբերին Սերգոն վերադառնում ե Բաքու և այդտեղից մեկնում Փարիզ, Լենինի մոտ։ Ն. Կ. Կրուպսկայան իր հիշողությունների մեջ պատմում ե.

«...Մի անգամ բարապանուհին գալիս ե և ասում «Յեկել ե ինչ վոր մի մարդ,

վոչ մի բառ ֆրանսերեն չի խոսում, յերևալի ձեզ մոտ է յեկել»: Յես ցած իջա, կանգնած եր կովկասյան տեսքով մի մարդ և ժպտում եր: Պարզվեց, վոր դա Սերգոն է: Այն ժամանակվանից սկսած նա դարձավ ամենամոտիկ ընկերներից մեկը»:

Փարիզից վոչ հեռու, Լոնժյումոյում, Լենինը 1911 թվականին ստեղծում է կուսակցական դպրոց, վորի ունկնդիրները հավաքագրված եյին Ռուսաստանում, տեղական կուսակցական կազմակերպությունների կողմից: Այդ դպրոցում սովորում եր նաև Որջոնիկիձեն:

Շուտով Որջոնիկիձեն ստիպված է լինում ընդհատել ուսումը: Նա նորից ուղարկվում է Ռուսաստան, Լենինի ամենապատասխանատու մի հանձնարարությամբ, այն է՝ աշխատանք կատարել համառուսական կուսակցական կոնֆերանսի նախապատրաստման ու հրավիրման ուղղությամբ: Չնայած ոստիկանության ճնշման տակ գտնվող յերկրում աշխատելու բացառիկ դժվարին պայմաններին, Որջոնիկիձեյին հաջողվում է փայլուն կերպով իրագործել Լենինի առաջադրանքը: Որջոնիկիձեն յեղել է Պրագայի կոնֆերանսի պատգամավոր՝



Թբիլիսիի բոլշևիկյան կազմակերպության կողմից:

Պրագայի կոնֆերանսում Որջոնիկիձեն ընտրվում է Կենտկոմի անդամ: Կենտկոմի 7 անդամներից 5-ը պետք է աշխատեյին Ռուսաստանում: Ստեղծվում է ընկերներ Ստալինից, Որջոնիկիձեյից և Սպանդարյանից կազմված Կենտկոմի բյուրո՝ Ռուսաստանում աշխատանքը ղեկավարելու համար:

Կենտկոմի վորոշմամբ Որջոնիկիձեյին հանձնարարվում է կոնֆերանսի մասին զեկուցում տալ Պետերբուրգի կուսակցական կազմակերպության համար: 1912 թվականի փետրվարին Սերգո Որջոնիկիձեն մեկնում է Պետերբուրգ, այնուհետև գնում է Վոլոգդայի նահանգը, այնտեղ աքսորի մեջ գտնվող ընկեր Ստալինի մոտ: Ընկեր Ստալինի հետ միասին, վորը փախչում է աքսորավայրից, նա գնում է Բաքու, իսկ այնուհետև Թբիլիսի: Թբիլիսում Սերգոն կուսակցական կազմակերպության համար զեկուցում է կարդում Պրագայի կոնֆերանսի մասին:

1912 թվականի ապրիլին Սերգո Որջոնիկիձեն նորից ուղևորվում է Պետերբուրգ:

1912 թվականի ապրիլի 27-ին նա նորից ձերբակալվում է։ Վեցամսյա նախնական բանտարկությունից հետո, Պետերբուրգի շրջանային դատարանը Սերգո Օրջոնիկիձեյին աքսորից փախչելու և բոլշևիկյան աշխատանքի համար դատապարտում է չորեք տարվա տաժանակիր աշխատանքի, որից հետո ուղարկելով ցմահ աքսորի։

1912 թվականի հոկտեմբերին Օրջոնիկիձեն շղթայակապ փոխադրվում է Շլիսելբուրգի բերդը։

Երեքամյա բանտարկությունը բերդում անցկացնելուց հետո, Սերգո Օրջոնիկիձեն 1915 թվականի սեպտեմբերին էտապով ուղարկվում է Արևելյան Սիբիր, Ալեքսանդրովսկի աքսորական բանտը (Իրկուտսկի մոտ)։ Այնտեղ նա մնում է մինչև Լենա գետի վրայով նավագնացության բացվելը և 1916 թվականի գարնանն ուղարկվում է աքսորավայրը՝ Վիլյուիսկի հեռավոր շրջանի Նյուրբինսկոյե գյուղական համայնքը։ Սակայն Յակուտսկից հիվանդանոցային բժշկի խնդրով, որը բժշկական աշխատողների կարիք ուներ, Սերգո Օրջոնիկիձեյին ուղարկում են Պոկրովսկոյե գյուղը, Յակուտսկից 90 կիլոմետր հեռավորության



վրա, որպես հիվանդանոցի բուժակ։

Աքսորում Օրջոնիկիձեն կրքոտ պայքար է մղում մենշևիկների, էսէռների, ու անարխիստների դեմ, մերկացնելով իմպերիալիստական պատերազմը պաշտպանելու նրանց դավաճանական քաղաքականությունը։

Փետրվարյան հեղափոխության հաղթանակի մասին Սերգո Օրջոնիկիձեն իմանում է հեռավոր ուլուսներում հիվանդներին այցելելու համար կատարած շրջագայության ժամանակ։ Նրա ուրախությունն անսահման էր։

Համարյա ութ տարի Սերգո Օրջոնիկիձեն գերի էր մնում ցարիզմի ձեռքում— բանտերում, Շլիսելբուրգի բերդում, էտապում և աքսորում։ Ցարիզմը տապալված էր։ Օրջոնիկիձեն, բոլոր մյուս իսկական լենինյանների նման, այդ հաղթանակը գնահատեց միայն որպես պայման՝ անհապաղ հանուն սոցիալիստական հեղափոխության պայքարի անցնելու համար։

Սերգոյին է պատկանում գլխավոր դերերից մեկը Յակուտիայում հեղափոխական նվաճումներն ամրապնդելու գործում։ Օրջոնիկիձեն մտնում է Յակուտական խոր-

հըրդի Գործադիր Կոմիտեյի կազմի մեջ, ընտրվում է Իրկուտսկի մարզի հասարակական անվտանգության կոմիտեյի նախագահության անդամ, կազմակերպչական ու ագիտացիոն մեծ աշխատանք է կատարում:

1917 թվականի մայիսին Սերգո Օրջոնիկիձեն մեկնում է Իրկուտսկ, իսկ այնտեղից՝ Պետրոգրադ և ամբողջապես կլանվում մարտական կուսակցական աշխատանքով: Լենինի առաջարկությամբ Սերգո Օրջոնիկիձեն մտցվում է բոլշևիկյան կազմակերպության Պետրոգրադի Կոմիտեյի կազմի մեջ:

Հուլիսյան օրերին հակահեղափոխությունը՝ համաձայնողականների— մենշևիկների ու էսէռների օժանդակությամբ, յելնում է վերահաս պրոլետարական հեղափոխության դեմ: Սկսվում են մասսայական ձերբակալությունները, բոլշևիկյան թերթերի ավերումը: Բուրժուազիան բացահայտորեն պահանջում էր դատաստան տես նել Լենինի նկատմամբ:

Գումարվում էր բոլշևիկյան կուսակցության 6-րդ համագումարը: Համագումարի նախապատրաստության ու անցկացման իսկական լենինյան ղեկավարությունն ապա-



հովում է ընկեր Ստալինը: Լենինն իր տաղավարից, իսկ ավելի ուշ՝ Հելսինգֆորսից ուղղություն էր տալիս բոլշևիկների աշխատանքին, ղեկավար ցուցումներ էր տալիս համագումարի օրակարգում դրված հարցերի վերաբերյալ: Լենինից դիրեկտիվներ ստանալու համար Օրջոնիկիձեն Ստալինի հանձնարարությամբ յերկու անգամ գնում է Լենինի մոտ՝ նրա տաղավարը:

Կուսակցության 6-րդ համագումարում ընկեր Ստալինն իր քաղաքական զեկուցման մեջ և ապա Օրջոնիկիձեն Լենինի՝ դատարանին ներկայանալու հարցի վերաբերյալ տված իր հատուկ զեկուցման մեջ ամենախիստ կերպով դեմ են արտահայտվում ներկայանալուն: «Նրանց համար,— հայտարարում է Սերգո Օրջոնիկիձեն,— կարեվոր է հնարավորին չափ մեծ թվով առաջնորդներ խլել հեղափոխական կուսակցության շարքերից: Մենք վոչ մի դեպքում չպետք է տանք ընկեր Լենինին»:

1917 թվականի սեպտեմբերի սկզբներին Օրջոնիկիձեն կարճ ժամանակով ուղարկվում է Անդրկովկաս: Նոյեմբերի 6-ին Օրջոնիկիձեն Անդրկովկասից վերադառնում է Պետրոգրադ և ակտիվ կերպով մասնակցում

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղաշրջմանը:

1918 թվականի հունվարի 2-ին Օրջոնիկիձեն նշանակվում է Ուկրաինայի շրջանի ժամանակավոր արտակարգ կոմիսար և կարևոր լիազորություններ ստանում Խորհրդային Ռուսաստանի այն բոլոր վայրերին հաց և այլ մթերքներ մատակարարելու ուղղությամբ, որոնք պարենամթերքի կարիք էին զգում:

Լենինի–Ստալինի կուսակցության Կենտկոմի վստահությունը վայելող մարդու արժանի յեռանդով ու արիությամբ նա օգնում է Ուկրաինական աշխատավորներին՝ ամրապնդելու Խորհրդային իշխանությունը և կատարելու այն հիմնական խնդիրը, որ այն ժամանակ կանգնած էր նրանց առջև, այն է՝ յերկրի խորքը փոխադրել պարենային պաշարները, նյութական արժեքները, ռազմական հանդերձանքը:

1918 թվականի ապրիլի սկզբներին Օրջոնիկիձեն փոխադրվում է Դոն: Ապրիլի 7-ին նա արդեն Դոնի Ռոստովումն էր: Այստեղ նա շարունակում է միջոցներ ձեռք առնել գերման–գայդամակներին ցույց տրվող դիմադրությունը կազմակերպելու ուղղու-



թյամբ, որոնք աստիճանաբար շարժվում էին դեպի հարավ, Դոնի և Կուբանի ուղղությամբ: 1918 թվականի ապրիլի 9-ին բացվում է Դոնի հանրապետության բանվորական, գյուղացիական ու կազակային պատգամավորների խորհուրդների առաջին համագումարը, որն Օրջոնիկիձեյին ընտրում է Դոնի հանրապետության Կենտգործկոմի կազմի մեջ:

Գերմանացիները մոտեցել էին Դոնին: Ապրիլի 29-ին Օրջոնիկիձեն Ռոստովում հեռագիր է ստանում Լենինից և Ստալինից: Լենինը և Ստալինը նրան և Ուկրաինայի զինված ուժերի հրամանատար Անտոնովին առաջարկում էին գերման–գայդամակյան ճակատում դադարեցնել ռազմական գործողությունները:

Մայիսի 2-ին Օրջոնիկիձեն Դոնի հանրապետության Կենտգործկոմի յերկու ներկայացուցիչների հետ միասին ուղևորվում է գերմանական հրամանատարության հետ բանակցություններ վարելու՝ պատերազմական գործողությունները դադարեցնելու մասին և Տագանրոգը գերմանացիների կողմից գրավվելու դեմ բողոք հայտնելու համար:

Տաղանրոգի գրավումը Բրեստի դաշնագրի պայմանների խախտում էր գերմանացիների կողմից, քանի որ Տաղանրոգը ՌՍՖՍՀ-ի տերիտորիան էր հանդիսանում: Արմյանսկայա ստանիցայի մոտ գերմանական պահակախումբը ձերբակալում է պատվիրակությանը, զինաթափ անում և ուղարկում Տաղանրոգ: Սերգո Օրջոնիկիձեն խիստ բողոք է հայտնում Բրեստի դաշնագրի պայմանները գերմանացիների կողմից խախտվելու և պատվիրակության ձերբակալման դեմ: Պատվիրակներին վերադարձվում է նրանց զենքը և ապահովվում է նրանց անարգել վերադարձը Ռուսաստան:

Մայիսի 7-ին ավստրո- գերմանական զորքերը, գայդամակները և սպիտակ կազակները գրավում են Ռոստովը: Օրջոնիկիձեն իր էշելոններով վերջինն է հեռանում Ռոստովից, նահանջելով սկզբում Բատայսկ, իսկ այնուհետև դեպի Տիխորեցկայա, որպեսզի այնտեղից մարտով առաջ շարժվի դեպի Ցարիցին:

«Դրությունն այստեղ լավ չէ,— 1918 թվականի մայիսի 23-ին Ցարիցինից, հեռագրում է Օրջոնիկիձեն Լենինին և Ստալինին,— հարկավոր են վճռական միջոց-



ներ, իսկ տեղական ընկերները չափից դուրս թույլ են, օգնություն ցույց տալու յուրաքանչյուր ցանկություն դիտվում է, որպես միջամտություն տեղական գործերին: Կայարանում կանգնած են Մոսկվայի համար հացահատիկ բարձած 6 մարշրուտային գնացք և չեն ուղարկվում... Նորից եմ կրկնում, հարկավոր են ամենավճռական միջոցներ: Ցարիցինի շուրջը մոլեգնում է հակահեղափոխությունը»:

1918 թվականի մայիսի 25-ին պաշտպանության շտաբի արտակարգ նիստում Օրջոնիկիձեն հանդես է գալիս Ցարիցինի վրա հարձակվող հակահեղափոխական բանդաների դեմ պայքար կազմակերպելու պլանով: Նա առաջարկում է քաղաքում յեղած խորհրդային զորքերը համախմբել մեկ հրամանատարության ներքո: Ապահովելով քաղաքի իրական պաշտպանությունը, Օրջոնիկիձեն շտապում է Կուբան:

Դեպի Կուբան և Չեռնոմորյե եյին շարժվում գերմանական զորքերը: Անհրաժեշտ էր կազմակերպել Կուբանի պաշտպանությունը գերմանացիներից և ամրապնդել յերիտասարդ Կարմիր Բանակի հզորությունը: Մայիսի 28-ին Յեկատերինոդարում

բացվում է Կուբանի և Չեռնամորյեի խորհուրդների արտակարգ 3-րդ համագումարը:

Օրջոնիկիձեն անմիջականորեն ղեկավարում է համագումարը, մի քանի անգամ ելույթ ունենում: Նրա առաջարկությամբ, անջատ- անջատ գոյություն ունեցող Կուբանի Խորհրդային հանրապետությունը և Սև-ծովյան Խորհրդային հանրապետությունը միանում են, կազմելով միասնական Կուբան- Սև ծովյան հանրապետություն:

1918 թվականի դեկտեմբերին Դենիկինի սպիտակ բանակն ավելի ու ավելի է մոտենում Թերեկի մարզի սահմաններին: Ինտերվենտների կողմից օժանդակություն ստանալով, միանալով Կուբանի հակահեղափոխության հետ, նա հարձակվում է 11-րդ Կարմիր Բանակի վրա: 11-րդ բանակը, կտրված Խորհրդային Ռուսաստանից, մնում է առանց արկերի, առանց փամփուշտի: Հանրապետության համար ծանր այդ ժամանակներում Օրջոնիկիձեն անցնում է Հյուսիսային Կովկասի մեկ անկյունից մյուսը, ռազմաճակատի մեկ տագնապալի շրջանից մյուսը:



Օրջոնիկիձեյի պնդումով 11-րդ բանակը պետք է կենտրոնանար Վլադիկավկազում և Գրոզնիում, Թերեկի հանրապետությունը պետք է պաշտպանվի. կոմունիստները մընում են իրենց տեղերում: Նրանց գլուխ առաջվա նման կանգնած է Օրջոնիկիձեն: Բայց տիֆից հյուծված բանակն սկսում է քայքայվել:

Հունվարի 24-ին Օրջոնիկիձեն Լենինին ուղարկած իր հեռագրում հաղորդում է՝

—«Արկ և փամփուշտ չկա: Փող չկա... Վեց ամիս է, որ պատերազմ ենք մղում, փամփուշտ ենք գնում հինգական ռուբլով: Վլադիմիր Իլյիչ, հաղորդելով Ձեզ այդ (մանրամասնությունը փոստով), հավաստիացնում եմ, որ մենք բոլորս էլ կկորչենք անհավասար կռվում, բայց մեր պատիվը չենք արատավորի փախուստով... Գրոզնու և Վլադիկավկազի բանվորների մեջ անհողդողդ վորոշում կա՝ մարտնչել և չհեռանալ: Լեռնցի ժողովուրդների համակրանքը մեր կողմն է:

Թանկագին Վլադիմիր Իլյիչ, մահացու վտանգի պահին, ողջույն ենք հղում Ձեզ և սպասում ենք Ձեր օգնության: Օրջոնիկիձե»:

Հունվարի վերջերին դենիկինյան զորամասերը մոտեցան Վլադիկավկազին: Քաղաքում կար ընդամենը մի քանի հազար մարտիկ: Սկսվեցին արյունահեղ կռիվները: Բանվորական գումարտակները, Կարմիր բանակի ջոկատները 7 օր անընդհատ պաշտպանում եյին քաղաքը՝ վրա տվող սպիտակ բանդաներից: Չորս օր հաղթանակորեն կռվում եյին ինգուշները: Օրջոնիկիձեն իր շտաբով փոխադրվեց ինգուշների մոտ՝ Բազորկինո, որպեսզի անմիջականորեն ղեկավարի մարտերը: Ճակատն անցնում եր 150 քայլ հեռավորության վրա այնտեղից, որտեղ տեղավորել եր Օրջոնիկիձեն իր շտաբը:

Սակայն ուժը սպիտակների կողմն եր և պետք յեղավ Վլադիկավկազը թողնել: Կոմունիստների Վլադիկավկազի խումբը, ընկեր Օրջոնիկիձեյի գլխավորությամբ, որոշեց ուղղվել սարերի խորքերը:

Միմիայն 1919 թվականի հունիսի սկզբներին, Օրջոնիկիձեն, Խեվսուրեթիայի և Դուշեթի վրայով, անլեգալ կերպով անցավ Թբիլիսի:

Դա այն միակ ուղին եր, որով Օրջոնիկիձեն կարող եր Մոսկվա ընկնել, յեթե նրան հաջողվեր անցնել հակահեղափոխա-



կան Անդրկովկասից և Կասպից ծովից, որտեղ տիրում եյին անգլիացիք:

Սերգո Օրջոնիկիձեն, Թբիլիսիի բոլշևիկների հետ միասին, ուրվագծեց հակահեղափոխական մենշևիկյան կառավարության դեմ հետագա պայքարի ուղիները: Օրջոնիկիձեյի գալու կապակցությամբ, Բաքվում նշանակվեց Անդրկովկասյան կոմունիստական կազմակերպությունների կուսակցական լայն խորհրդակցություն:

Խորհրդակցությունից հետո, Օրջոնիկիձեն Մոսկվա ուղևորվեց այն ժամանակ միակ հնարավոր, բայց արտասովոր ուղիով՝ ձկնորսական առագաստանավով, Կասպից ծովով: 1919 թվականի հուլիսին Օրջոնիկիձեն նշանակվեց Արևմտյան ճակատի 16-րդ բանակի Հեղափոխական Ռազմական Խորհրդի անդամ:

Հակառակորդն արշավում եր Բելոռուսիայի մայրաքաղաք Մինսկի վրա: Շատ դժվար եր պարզել ճակատում տիրող իրական վիճակը, որովհետև Կարմիր բանակի ցրված զորամասերի հետախուզումները հակասական տեղեկություններ եյին տալիս հակառակորդի դասավորման մասին: Յեվ ահա, մի մութ գիշեր Օրջոնիկիձեն, Բորիսովի գավառական Հեղկոմի անդամների և

մի տասնյակ կարմիր բանակայինների հետ միասին, հրացանը ձեռին, վոտքով, հետախուզման է գնում դեպի Բորիսով: Հետախույզները թափանցում են սպիտակ լեհերի խոր թիկունքը, հասնելով համարյա Բորիսովի արվարձանը, պարզում են հակառակորդի ուժերի թիվը, նրա դիրքերը: Յերկու օրից Բորիսովը գրավվեց Կարմիր բանակի զորամասերի կողմից:

Որջոնիկիձեն Արևմտյան ճակատում մնաց մոտ յերեք ամիս: 1919 թ. հոկտեմբերին կուսակցությունը և կառավարությունը նրան նետեցին ճակատ Դենիկինի դեմ:

Նա նշանակվեց 14-րդ բանակի Հեղափոխական-Ռազմական Խորհրդի անդամ: Նա, ընկեր Ստալինի կարգադրությամբ, Արևմտյան ճակատից Հարավային ճակատը տարավ Լատիշյան դիվիզիան: Անհրաժեշտ եր վճռական բեկում ստեղծել ճակատում:

Հոկտեմբերի 20-ին հարվածող խմբակը (Լատիշյան դիվիզիայի 3-րդ բրիգադը, 9-րդ և եստոնական դիվիզիաների զորամասերը) կռվով գրավեցին Օրյոլը: Այդ զորամասերին գլխավորում եր Որջոնիկիձեն:

1920 թ. փետրվարի սկզբներին, Համ. Կ(բ)Կ Կենտկոմի վորոշմամբ ստեղծվում է Հյուսիսային Կովկասում Խորհրդային իշ-



խանությունը վերականգնելու կուսակցական բյուրո: Բյուրոյի նախագահ է նշանակվում Սերգո Որջոնիկիձեն:

Ապրիլի 27-ից 28-ի գիշերին Ադրբեջանում տապալվեց մուսավաթական կառավարությունը: Կազմված Ադրբեջանյան Հեղկոմը հրավիրեց Կարմիր Բանակը: Ապրիլի 28-ին, ցերեկվա ժամի 4-ին, կարմիր եշելոնները մտան պրոլետարական Բաքուն: Ապրիլի 30-ին Որջոնիկիձեն, Կիրովի հետ միասին, մտավ Անդրկովկասյան բոլշևիկների ազատագրված մայրաքաղաքը: Խորհրդային Ադրբեջանի համար մղվող այդ պայքարում Որջոնիկիձեյի կատարած դերը հակիրճ, բայց սպառիչ կերպով գնահատել եր ընկեր Ստալինը 1936 թ. հունվարի 20-ին Ադրբեջանի պատվիրակությանը Կրեմլում ընդունելիս: Ընկեր Ստալինը Որջոնիկիձեյի ամբիոն բարձրանալը վողջունել եր հետևյալ խոսքերով՝

«Վողջո՛ւյն Ադրբեջանի ազատարարին: Նա առաջինը մտավ Ադրբեջան»: 1921 թ. փետրվարի 25-ին Վրաստանի մայրաքաղաքը խորհրդային դարձավ: Որջոնիկիձեյի կողմից Լենինին և Ստալինին ուղարկված հեռագիրն ասում է՝

«Թիֆլիսի վրա ծածանվում է խորհրդային

իշխանության կարմիր դրոշը: Կեցցե՛ Խորհրդային Վրաստանը»:

Այն օրերին, երբ Օրջոնիկիձեն վերջնական հարված էր հասցնում Վրաստանի հակահեղափոխությանը, ՌԿ(բ)Կ 10-րդ համագումարը, որի նիստերը տեղի էին ունենում Մոսկվայում, նրան իր բացակայությամբ ընտրեց ՌԿ(բ)Կ կենտկոմի անդամ:

Համառուսական կենտգործկոմի նախագահությունն իր 1921 թվականի մայիսի 19-ի վորոշմամբ Սերգո Օրջոնիկիձեյին պարգևատրեց Մարտական Կարմիր Դրոշի շքանշանով:

Սերգո Օրջոնիկիձեն ամենադժվար պայմաններում պետք է կանոնավորեր խորհրդային իշխանությունն Անդրկովկասում: Պետք էր սկսել կուսակցական կազմակերպության ամրացումից, պրոլետարական ինտերնացիոնալիզմի վոգով տոգորել նրա աշխատանքը: Խորհրդային իշխանության դրոշի տակ միացած Անդրկովկասում Օրջոնիկիձեն ծավալեց կուսակցական խոշորագույն կազմակերպչի և բոլշևիկյան կուսակցության ղեկավարի իր ընդունակությունները:

1921 թ. նոյեմբերի 2-ին ՌԿ(բ)Կ կենտկոմի Կովկասյան Բյուրոն, որի նիստերը



տեղի էին ունենում Բաքվում՝ մասնակցությամբ Բաքվի ու Ադրբեջանի ղեկավար կուսակցական օրգանների անդամների և Վրաստանի ու Հայաստանի կոմկուսների կենտրոնական կոմիտեների անդամների, վորոշում ընդունեց Անդրկովկասի Միութենական Խորհուրդ կազմակերպելու մասին:

1922 թ. հունվարի 23-ին բացվեց Վրաստանի Կոմունիստական Կուսակցության առաջին լեգալ համագումարը: Օրջոնիկիձեյի ղեկավարությունն ապահովեց լենինյան-ստալինյան գծի հաղթանակը համագումարում:

Անդրկովկասյան կոմունիստական կազմակերպությունների չուտով (1922 թ. փետրվարի 18—22-ին) տեղի ունեցած առաջին համագումարը, վորտեղ Օրջոնիկիձեն հանդես յեկավ Կովկասյան Բյուրոյի աշխատանքի վերաբերյալ քաղաքական հաշվետվությամբ, մի ցույց էր լենինյան կենտկոմի շուրջը Անդրկովկասի կոմկուսների հիմնական կորիզի իսկական միասնության ու բոլշևիկյան միաձուլության:

Մարտին—ապրիլին ընկեր Օրջոնիկիձեն մասնակցում է ՌԿ(բ)Կ 11-րդ համագումարի աշխատանքներին, վորտեղ ընտրվում է կենտկոմի անդամ: Նա կենտրոնական կո-

միտեյի անդամ է ընտրվում 12-րդ, 13-րդ և 14-րդ կուսակցական համագումարներում:

14-րդ կուսակցական համագումարում Սերգո Օրջոնիկիձեն ջախջախիչ հարձակումներ է գործում սոցիալիզմի դավաճանների ու մատնիչների Զինովևի ու Կամենևի վրա: 14-րդ համագումարում իր արտասանած ճառում նա անողոքաբար մերկացնում է այսպես կոչված «նոր օպոզիցիան», որը ոչ մի միջոցից չէր խորշում կուսակցության լենինյան-ստալինյան ղեկավարությունը պայթեցնելու համար:

14-րդ համագումարից հետո Օրջոնիկիձեն Անդրկովկաս է վերադառնում համեմատաբար կարճ ժամանակով: 1926 թվականի սեպտեմբերի մոտ 20-ին Համ.Կ(բ)Կ Կենտկոմը նրան ուղարկեց Հյուսիսային Կովկաս, որտեղ միառժամանակ նա աշխատում էր, որպես Համ.Կ(բ)Կ Հյուսիսային Կովկասյան Երկրկոմի առաջին քարտուղար:

1926 թ. նոյեմբերի 3-ին Կենտկոմի և ԿՎՀ-ի միացյալ պլենումը Սերգո Օրջոնիկիձեյին ընտրում է Կենտրոնական Վերահսկիչ Հանձնաժողովի նախագահ: ԽՍՀՄ-ի Կենտգործկոմի նախագահության որոշմամբ, նա նշանակվում է ԽՍՀՄ-ի Բանվորագյուղացիական Տեսչության ժողկոմ և



ԽՍՀՄ ժողկոմխորհի նախագահի տեղակալ:

Սերգո Օրջոնիկիձեն ԿՎՀ—ԲԳՏ-ն գլխավորեց հեղափոխության զարգացման ամենադժվարին շրջաններից մեկում, այն շրջանում, երբ ծավալվում էր մեր նախապատրաստումը ժողովրդական տնտեսության վերականգնումից անցնելու նրա վերակառուցմանը՝ տեխնիկական նոր բազայի վրա, այն շրջանում, երբ կազմավորված տրոցկիստական—զինովևական բլոկն արդեն անցել էր կուսակցության և խորհրդային իշխանության դեմ պայքարելու բացահայտ հակահեղափոխական մեթոդների:

Կուսակցության 15-րդ համագումարում, Օրջոնիկիձեն հանդես գալով ԿՎՀ—ԲԳՏ-ի աշխատանքին նվիրված զեկուցումով, ասում էր՝

«Օպոզիցիան գտնում է, որ ԿՎՀ-ն ոչ մի քաղաքական դեմք չպետք է ունենա, որպես մի վատ խնամախոս, որը պետք է մեկից վազի մյուսին, որպեսզի մի կերպ հաշտեցման հասնի: Մենք գտնում ենք, որ նախ և առաջ պետք է լինենք բոլշևիկ, լենինյան, և ապա կարող ենք լինել ԿՎՀ-ի անդամ, Կենտկոմի, շրջանային կոմիտեյի, բջիջի անդամ և այլն: Մենք գտնում ենք, որ նախ և առաջ պետք

է լինել բոլշևիկ, իսկ օպոզիցիան մեզանից՝ ԿՎՀ-ի անդամներից, պահանջում է դադարել բոլշևիկ լինելուց»:

Կապիտալիզմի տրոցկիստական զինովյևական ռեստավրատորների բլոկը ջախջախվելուց հետո, շուտով գլուխ բարձրացրեց աջ օպոզիցիան, որին գլխավորում էին Բուխարինը, Տոմսկին և Ռիկովը:

Աջ թափթփուկները, կուսակցության դեմ իրենց մղած պայքարում, միանում էին տրոցկիստներին, խոսք մեկ անելով նրանց հետ՝ բոլոր հակահեղափոխական ուժերը կուսակցության դեմ, Կենտկոմի և ընկեր Ստալինի դեմ պայքարելու համար միացնելու մասին:

«Ընկեր Ստալինի դեմ ուղղված պայքարը,— ասում էր Օրջոնիկիձեն կուսակցության 16-րդ համագումարում,— մի պայքար է մեր կուսակցության լենինյան Կենտկոմի գլխավոր գծի դեմ: Կուսակցությունը գնաց իր Կենտկոմի հետևից: Կուսակցությունը, հանձին Ստալինի, տեսնում է կուսակցության հիմնական գծի անխոնջ պաշտպանին ու Վլադիմիր Իլյիչի լավագույն աշակերտին: Ցեվ այդ պատճառով մեր կուսակցությունն ու բանվոր դասակարգը միանգամայն ճիշտ կերպով ընկեր Ստալի-



նին նույնացնում են մեր կուսակցության հիմնական գծի հետ, որը հաղթանակից հաղթանակ է տանում ՍՍՀՄ-ն...»:

ԲԳՏ-ի ժողկոմատը հսկայական պայքար ծավալեց պետական ապարատի բյուրոկրատիզմի, անշարժության, ճահճացման ու քաշքշուկի դեմ:

Օրջոնիկիձեյի, որպես ԲԳՏ-ի ժողկոմի մատուցած գլխավոր ծառայություններից մեկն էր այդ օրգանի շրջադարձը դեպի տնտեսությունը: Օրջոնիկիձեն ինքը մանրամասնորեն ուսումնասիրում էր արդյունաբերական շինարարության բոլոր հարցերը՝ սկսած հիմնական շինարարությունից ու նոր շինարարությունների յուրացումից մինչև արտադրության բուն պրոցեսի կազմակերպումը՝ նրա բոլոր վճռական ետապներում:

Օրջոնիկիձեն տնտեսավարներին չարունակ կոչ էր անում՝ բոլշևիկյան կուսակցականությամբ հագեցնել իրենց ամբողջ աշխատանքը, ընդարձակել ինքնաքննադատությունը, զարգացնելով բանվորների մասսայական նախաձեռնությունը: Նա քանիցս կրկնել է, որ միմիայն այդ պայմաններում կարող են նրանք հաջողությամբ աշխատել և հաղթանակի հասնել:

1930 թ. նոյեմբերի 10-ին Օրջոնիկիձեն նշանակվեց ԽՍՀՄ-ի Ժողովրդական Տնտեսության Գերագույն Խորհրդի նախագահ։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի ու ԿՎՀ-ի դեկտեմբերի 17-ից մինչև 21-ը տեղի ունեցած միացյալ պլենումի վորոշմամբ, նա մտցվեց ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Քաղբյուրոյի կազմի մեջ, վորպես անդամ։

1929—30—31 թվականները հանդիսացան սոցիալիստական եկոնոմիկայի ֆունդամենտի հիմնադրման տարիները։ Կառուցվում եյին Մագնիտկան ու Կուզնեցկը, ավտոգործարաններ Գորկում և Մոսկվայում, Ուրալմաշը և Կրամատորսկը, տրակտորային գործարանները Ստալինգրադում, Խարկովում, Չելյաբինսկում, սոցիալիզմի հարյուրավոր ինդուստրիալ բերդեր։

Մեծ պայքար ծավալվեց ծանր արդյունաբերության շինարարության համար։ Սերգո Օրջոնիկիձեն գործին կպավ իրեն հատուկ հեղափոխական վոգևորությամբ և բոլշևիկյան յեռանդով։ Հարկավոր եր ջախջախել հին տեմպերին, աշխատանքի հին մեթոդներին վարժված շատ աշխատողների ճահճացումն ու անշարժությունը, հարկավոր եր բոլշևիկորեն ձեռնամուխ լինել կադ-



րերի կազմակերպմանն ու դաստիարակմանը։

Սոցիալիստական արդյունաբերության բանակի հրամանատարը ղեկավարում եր արդյունաբերությունը վոչ միայն իր մարտական վիշկայից, այլև անմիջականորեն դիրքերում ու ճակատներում, ցեխերում, շինարարությունների առանձին ճակատամասերում։

Ստալինգրադ, Գորկիյ, Լենինգրադ, Խարկով, Ստալինո, Կրամատորսկ, Կամենսկոյե, Դնեպրոպետրովսկ, Զապորոժյե, Ենակիևո, Մարիուպոլ, Վորոշիլովսկ, Մագնիտագորսկ, Չելյաբինսկ, Ստալինսկ, Պրոկոպևսկ, Կեմերովո, Նովոսիբիրսկ, Սվերդլովսկ; Նիժնիտագիլ, Պերմ, Գրոզնիյ, Բաքու, Կիչկաս, Բոբրիկի, Մակեևկա, Լուգանսկ, Կրիվոյ Ռոգ, Բերեզնիկի, Սոլիկամսկ,—ահա վոչ լրիվ ցուցակն ինդուստրիալ այն օջախների, վորոնք քանիցս այցելել ե Սերգո Օրջոնիկիձեն։

1935 թ. հունվարին, Սերգո Օրջոնիկիձեն ծանր արդյունաբերության դրության վերաբերյալ հաշվետու զեկուցումով հանդես յեկավ Խորհուրդների 7-րդ Համամիութենական Համագումարում։ Համա-

զումարում Սերգո Օրջոնիկիձեյի տված զեկուցումը սոցիալիզմի ինդուստրիայի իսկական հաղթանակների արտացոլումն էր:

Խորհուրդների 7-րդ Համագումարը նշանակալից բանաձև ընդունեց՝

«Լսելով և քննարկելով Ծանր Արդյունաբերության Ժողովրդական կոմիսար ընկեր Գ. Կ. Օրջոնիկիձեյի զեկուցումը՝ ԽՍՀ Միության Խորհուրդների 7-րդ Համագումարը վորոշում է՝

1. Գտնել Ծանր Արդյունաբերության Ժողովրդական Կոմիսարիատի աշխատանքը միանգամայն բավարար:

2. Առաջարկել ԽՍՀ Միության Կենտրոնական Գործադիր Կոմիտեյի Նախագահությանը՝ քննարկել ծանր արդյունաբերության ամենից ավելի աչքի ընկած աշխատողներին պարգևատրելու հնարավորության հարցը»:

ԽՍՀՄ-ի Կենտգործկոմի մարտի 22-ի վորոշման մեջ ասված է՝

«ԽՍՀ Միության Ծանր Արդյունաբերության Ժողովրդական Կոմիսարիատի գծով 1934 թ. արտադրական ծրագրի գերակատարման և արտադրությունը կազմակեր-



պելու ու տեխնիկային տիրապետելու գործում ձեռք բերված հաջողությունների համար, ԽՍՀ Միության Կենտրոնական Գործադիր Կոմիտեն վորոշում է՝

Լենինի շքանշանով պարգևատրել Ծանր Արդյունաբերության ժողովրդական կոմիսար ընկեր Գրիգորի Կոնստանտինովիչ Օրջոնիկիձեյին»:

Յերկրորդ հնգամյակի տարիներին Սերգո Օրջոնիկիձեն անխոնջ կերպով աշխատում է նոր տեխնիկան յուրացնելու, գիտահետազոտական աշխատանքը կազմակերպելու, շահաբերության, արտադրանքի վորակի, գործարանների համագործակցման, արտադրության կուլտուրայի բարձրացման և նոր կադրերի դաստիարակման պրոբլեմները լուծելու վրա: Նա խորապես զգում է, վոր համաշխարհային պատմության մեջ առաջին անգամ ազատագրված արտադրական ուժերը պետք է հսկայական բարիքներ բերեն ժողովրդին: Իր հետախույզ մտքով նա նորանոր մեթոդներ ու յեղանակներ եր փնտրում, թե ինչպես ավելի ու ավելի բարձրացնի արտադրությունը, վորպեսզի յերկիրն ավելի հարստանա, վորպեսզի ստալինաբար պայ-

քար մղվի մեր հայրենիքի ծաղկման համար։

Օրջոնիկիձեն իսկույն գնահատեց Ստախանովի սկսած գործի մեծ նշանակությունը։ Կուսակցության Դոնեցի մարզկոմի անունով իր ուղարկած հեռագրում նա գրել էր, որ ածխային Դոնբասի հերոսներ Ստախանովի, Դյուկանովի, Կոնցեդալովի և ուրիշների ռեկորդները հոդս են ցնդեցնում ածխահատի արտադրական նորմաների բոլոր հին պատկերացումները և փայլուն ապացույց են, թե «ինչպիսի հսկայական հնարավորություններ ունենք մենք և որքան հետ են մնացել կյանքից այն պատուհաս-ղեկավարները, որոնք միայն օբյեկտիվ պատճառներ են փնտրում իրենց վատ աշխատանքը, վատ ղեկավարությունն արդարացնելու համար»։

1936 թ. հունվարին ԽՍՀ Միության Կենտրոնական Գործադիր Կոմիտեն ընկեր Օրջոնիկիձեյին պարգևատրեց Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով՝ «1935 թ. արտադրական պլանը գերակատարելու, նոր տեխնիկան յուրացնելու գործում ձեռք բերված հաջողությունների



և ստախանովյան շարժման զարգացման մեջ ցուցաբերած նախաձեռնության համար»։

Ընկեր Սերգո Օրջոնիկիձեյի անվան հետ անմիջականորեն կապված է նաև խորհրդային իրականության մի այլ զարմանալի երևույթը՝ ինժեներա-տեխնիկական աշխատողների ու տնտեսավարների կանանց շարժումը։

1936 թ. հոկտեմբերի 28-ին լրացավ Սերգո Օրջոնիկիձեյի 50 տարին։ Ամբողջ Խորհրդային երկիրը տոնում էր այդ հոբելյանը, որպես համաժողովրդական հանդես։ Խորհրդային Միության ամենատարբեր անկյուններից՝ բանվորներից, ծառայողներից, կոլտնտեսականներից, գիտության ու տեխնիկայի մարդկանցից, ուսանողներից ու Կարմիր բանակայիններից, կուսակցական և ոչ կուսակցական բոլշևիկներից, հազարավոր ողջույններ ստացավ իր հիսնամյա հոբելյանի օրը խորհրդային ժողովրդի և բոլշևիկյան կուսակցության սիրելի, խոշորագույն ղեկավարներից մեկը՝ Սերգո Օրջոնիկիձեն։

Խորհրդային մարդկանցից ո՞ւմ համար թանկ չի այդ անունը։ Ո՞վ չէր ճանաչում

այդ անզուսպ հեղափոխականին, ստալինյան կոփվածքի տեր մարդուն, հմայիչ ընկեր և ամրակուռ, փորձված ղեկավարին, որը չէր ընկճվում ոչ մի դժվարության առջև, որը միշտ, իր ամբողջ կյանքում, գլուխը հպարտորեն բարձրացրած տանում էր բոլշևիզմի դրոշը: Նրա համար չկար ավելի թանկագին բան, քան իր պարտքը կուսակցության հանդեպ, նրա համար չկար ավելի թանկագին բան, քան մեր Հայրենիքի շահերը, պրոլետարական հեղափոխության գործը, կոմունիզմի գործը:

Կուսակցությունը Սերգո Օրջոնիկիձեյին միշտ հանձնարարել է պայքարի ու շինարարության ամենապատասխանատու, վճռական ճակատամասերը, գիտենալով, որ նա կկարողանա բարձրացնել ու կազմակերպել մասսաներին, համախմբել իր շուրջը նվիրված մարտիկներին և հաղթանակի հասնել ամենուրեք. որտեղ հրապարակ գար Սերգոն՝ ընդհատակյա պայքարի օրերին, քաղաքացիական պատերազմի ճակատներում տեղի ունեցած կռիվներին, կուսակցական ու պետական ամենապատասխանատու պոստերում. տնտեսական



շինարարության ղեկավարի դերում— նա իր հետ տանում էր բոլշևիկի բոցավառ հուրը, ականավոր կազմակերպչի ստեղծարար նախաձեռնությունը և բոլորին վարակող խանդավառությունն ու պայքարի հզոր պաթոսը: Նրա ղեկավարությամբ անձնվիրաբար աշխատում էին ընդհատակյա հեղափոխականների խմբակները: Նրա ղեկավարությամբ կռվում և հաղթում էին քաջարի Կարմիր Բանակի մարտիկները: Նրա ղեկավարությամբ աշխատավորները հերոսաբար կառուցում էին սոցիալիստական ինդուստրիայի հսկաներ:

Զապորոժյեն և Մագնիտոգորսկը, Կրամատորսկն ու Կեմերովոն, Ստալինգրադն ու Նովոսիբիրսկը, Գրոզնին ու Բերեզնիկին, Սոլիկամսկն ու Վորոշիլովսկը, Բաքուն ու Լենինգրադը, Սվերդլովսկն ու Մակեյեվկան, Չելյաբինսկն ու Ստալինոն, Կրիվոյ Ռոգն ու Պերմը, Մոսկվան ու Խաբարովսկը, շատ ու շատ քաղաքներ և բանվորական ավաններ տեսնում էին ու գիտեին, թե Սերգոն, այդ յերկաթյա ժողկոմը, որը ղեկավարում էր իր թափով և բնույթով աշխարհում աննախըն–

թաց տնտեսությունը, ինչպես էր կարողանում տեսնել կառուցման ու աշխատանքի մանրուքները, ինչպես էր կարողանում տեսնել ու գնահատել մեծ ու փոքր աշխատողներին, բոլոր նրանց, ովքեր աշխատում էին հօգուտ մեր Հայրենիքի: Սերգո Օրջոնիկիձեն բոլշևիկ-ղեկավարի, անբասիր, մաքուր, և կայուն կուսակցականի, կուսակցության լենինյան-ստալինյան քաղաքականության անհաշտ մարտիկի տիպարն էր: Կուսակցության գլխավոր գծի համար մղվող պայքարում նա բազմաթիվ ջախջախիչ հարվածներ հասցրեց նրա թշնամիներին: Տրոցկիստ սրիկաները, Ֆաշիզմի գործակալները և նրանց գործակիցներն ու ձայնակիցները՝ այդ թափթփուկները ատում էին Սերգո Օրջոնիկիձեյին — Համ. Կ(բ)Կ և Խորհրդային Միության առաջնորդներից մեկին, կուսակցությանը և Հայրենիքին նրա անձնուրաց նվիրվածության համար, նրա խորհրդային բոցավառ հայրենասիրության համար, նրա անհաշտության համար բոլոր նրանց նկատմամբ, ովքեր գործով կամ խոսքով փորձում էին վնաս հասցնել սոցիալիզմին:

Սերգոյի անձնուրաց, հերոսական, անձ-



նվեր պայքարը կուսակցության գծի համար, Պրոլետարական հեղափոխության հաղթանակի համար, ԽՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման համար, համաշխարհային հեղափոխության հաղթանակի համար, նրա պատկերը խորհրդային յերկրի և ամբողջ աշխարհի բոլոր աշխատավորներին կվոգեշնչեն նոր խիզախությունների, հետագա պայքարի՝ հանուն կոմունիզմի գաղափարների հաղթանակի:

ԽՍՀՄ-ի աշխատավորներն իրենց սիրելի բարեկամի, ընկերոջ ու ղեկավարի — Սերգո Օրջոնիկիձեյի հիշատակը հավերժացնելու համար ե՛լ ավելի անձնուրացորեն և նվիրվածորեն պայքարում են ու կպայքարեն սոցիալիզմի գործի համար, վորին նա նվիրեց և զոհեց իր սքանչելի, հերոսական, խիզախությամբ և արիությամբ լի կյանքը։

# ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ 21-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ

Ի. ՍՏԱԼԻՆ

# ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՅԵՐԵՔ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ *)

## ՃԱՌ ՄՈՍԿՎԱՅԻ ԽՈՐՀՐԴԻ՝ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՏԱՍԵՐՈՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ՆՎԻՐՎԱԾ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ

Ընկերնե՛ր, թույլ տվեք մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի անունից վողջունել մեր Կարմիր Բանակի մարտիկներին, մեր կարմիր նավատորմի մարտիկներին, մեր Կարմիր ավիացիայի մարտիկներին, վերջապես, մեր նախակոչիկներին. ԽՍՀՄ-ի զինված բանվորներին:

*) (*Հրապարակված ե «Պրավդա»-յում, 1928 թվականի փետրվարի 28-ին*):



Կուսակցությունը հպարտանում ե, վոր իրեն հաջողվեց բանվորների ու գյուղացիների ոգնությամբ ստեղծել աշխարհում առաջին Կարմիր Բանակը, վորը մեծագույն մարտերում պաշտպանել ու պաշտպանում ե բանվորների ու գյուղացիների ազատությունը:

Կուսակցությունը հպարտանում ե, վոր Կարմիր Բանակին հաջողվեց պատվով անցնել մեր յերկրի բանվոր դասակարգի ու գյուղացիության ներքին ու արտաքին թշնամիների դեմ մղած դաժանագույն մարտերի ծանր ուղին. վոր նրան հաջողվեց ձևավորվել վորպես մեծագույն մարտական հեղափոխական ուժ՝ ի սարսափ բանվոր դասակարգի թշնամիների, հուրախություն բոլոր ճնշվածների ու ստրկացվածների:

Կուսակցությունը հպարտանում ե, վոր Կարմիր Բանակը անցնելով բանվորներին ու գյուղացիներին կալվածատերերի ու կապիտալիստների լծից ազատագրելու յերկար ուղին, իրեն համար, վերջապես, իրավունք նվաճեց տոնելու իր հոբելյանը, իր ծննդյան տասներորդ տարում:

Ընկերնե՛ր, ինչի՞ մեջ ե մեր Կարմիր Բանակի ուժը, վո՞րտեղ ե նրա ուժի աղբ-

յուրը: Ինչի՞ մեջ են կայանում այն առանձնահատկությունները, վորոնք արմատական կերպով տարբերում են մեր Կարմիր Բանակը աշխարհում յերբևիցե գոյություն ունեցած բոլոր և ամեն տեսակի բանակներից: Ինչի՞ մեջ են այն առանձնահատկությունները, վորոնք կազմում են մեր Կարմիր Բանակի ուժի ու հզորության աղբյուրը:

Մեր Կարմիր Բանակի առաջին և հիմնական առանձնահատկությունը կայանում է նրանում, վոր նա ազատագրված բանվորների ու գյուղացիների բանակն է, նա Հոկտեմբերյան հեղափոխության բանակն է, պրոլետարիատի դիկտատուրայի բանակը: Մինչև այժմ գոյություն ունեցող բոլոր բանակները, ինչ կազմ էլ վոր նրանք ունենան, հանդիսանում են կապիտալի իշխանությունն ամրապնդող բանակներ: Նրանք յեղել և մնացել են կապիտալի տիրապետության բանակներ: Բոլոր յերկրների բուրժուաները ստում են, յերբ ասում են, թե բանակը քաղաքականապես չեզոք է: Ճիշտ չէ սա: Բուրժուական սխտություններում բանակը զրկված է քաղաքական իրավունքներից, նա հեռացված է քա-



ղաքական արենայից, սա ճիշտ է: Սակայն սա ամենևին չի նշանակում, թե նա չեզոք է քաղաքականապես: Ընդհակառակը, միշտ և ամենուրեք, կապիտալիստական բոլոր յերկրներում բանակը ներգրավվել ու ներքավվում է քաղաքական պայքարի մեջ, ծառայելով վորպես բանվորներին ճնշելու գործիք: Մի՞թե սա ճիշտ չէ, վոր բանակն այնտեղ ճնշում է բանվորներին, վոր նա այնտեղ տերերին պատվար է ծառայում: Ի տարբերություն այդպիսի բանակներից, մեր Կարմիր Բանակն այն առանձնահատկությունն ունի, վոր նա հանդիսանում է բանվորների ու գյուղացիների իշխանությունն ամրապնդելու գործիք, պրոլետարիատի դիկտատուրան ամրապնդելու գործիք, կալվածատերերի ու կապիտալիստների լծից բանվորներին ու գյուղացիներին ազատագրելու գործիք: Մեր բանակը աշխատավորների ազատագրման բանակ է:

Արդյոք ուշադրություն դարձրե՞լ եք դուք, ընկերնե՛ր, վոր հին ժամանակ, և հենց հիմա էլ կապիտալիստական յերկրներում ժողովուրդը վախենում էր և շարունակում է վախենալ բանակից, վոր ժողո-

վրդի ու բանակի միջև գոյություն ունի անջրպետ, վորը բանակը բաժանում է ժողովրդից: Ե՛, իսկ մեզանում: Մեզանում, ընդհակառակը, ժողովուրդն ու բանակը կազմում են մի ամբողջություն, մի ընտանիք: Աշխարհում վոչ մի տեղ չկա ժողովրդի կողմից դեպի բանակը ցուցաբերվող այնպիսի սիրալիր ու հոգատար վերաբերմունք, ինչպես մեզանում: Մեզանում բանակը սիրում են, նրան հարգում են, նրա մասին հոգ են տանում: Ինչո՞ւ: Վորովհետև բանվորներն ու գյուղացիները աշխարհում առաջին անգամն են ստեղծել իրենց սեփական բանակը, վորը ծառայում է վո՛չ թե տերերին, այլ նախկին ստրուկներին, ներկայումս ազատագրված բանվորներին ու գյուղացիներին:

Ահա թե վորտեղ է մեր Կարմիր Բանակի ուժի աղբյուրը:

Իսկ ի՞նչ է նշանակում ժողովրդի սերը դեպի իր բանակը: Այդ նշանակում է, վոր այդպիսի բանակը կունենա ամենաամուր թիկունք, վոր այդպիսի բանակն անհաղթելի յե հանդիսանում: Ի՞նչ բան է առանց ամուր թիկունքի բանակը: Վոչինչ: Ամենամեծ բանակները՝ ամենալավ զինված բա-



նակները, առանց ամուր թիկունքի, առանց թիկունքի կողմից, աշխատավոր բնակչության կողմից ցուցաբերվող ոգնության ու համակրանքի, քայքայվում ու փոշիանում եյին: Մեր բանակն աշխարհում միակն է, վորը բանվորների ու գյուղացիների կողմից համակրանք ու ոգնություն է վայելում: Սրա մեջ է նրա ուժը, սրա մեջ է նրա ամրությունը:

Ահա թե, ամենից առաջ, ինչով է մեր Կարմիր Բանակը տարբերվում աշխարհում գոյություն ունեցած և գոյություն ունեցող մյուս բոլոր տեսակի բանակներից:

Կուսակցության ցանկությունները, նրա խնդիրը կայանում է նրանում, վոր Կարմիր Բանակի այս առանձնահատկությունը, բանվորների ու գյուղացիների հետ ունեցած նրա այս մոտիկությունը, նրա յեղբայրական կապը պահպանվի ու ամրապնդվի մեր Կարմիր Բանակի համար:

Մեր Կարմիր Բանակի յերկրորդ առանձնահատկությունը կայանում է նրանում, վոր նա, մեր բանակը, հանդիսանում է վորպես մեր յերկրի ժողովուրդների միջև յեղող յեղբայրության բանակ, վորպես մեր յերկրի ճնշված ժողովուրդնե-

րի ազատագրման բանակ, վորպես մեր յերկրի ժողովուրդների ազատության ու անկախության պաշտպանության բանակ: Հին ժամանակ բանակները սովորաբար դաստիարակվում եյին շովինիզմի վոգով, զավթողականության վոգով, ոտար ժողովուրդներ հնազանդեցնելու անհրաժեշտության վոգով: Հենց սրանով ե իսկապես բացատրվում, վոր հին տիպի բանակները, կապիտալիստական բանակները դրանով մեկտեղ նաև գաղութային բանակներ եյին: Սրանում եր կայանում հին բանակների հիմնական թուլություններից մեկը: Մեր բանակն արմատական կերպով տարբերվում ե գաղութային բանակներից: Նրա ամբողջ եյությունը, նրա ամբողջ կառուցվածքը հիմնվում ե մեր յերկրի ժողովուրդների միջև բարեկամական կապերի ամրապնդման վրա, նշված ժողովուրդների ազատագրման գաղափարի վրա, խորհրդային Միության կազմի մեջ մտնող սոցիալիստական հանրապետությունների ազատության ու անկախության պաշտպանության գաղափարի վրա:

Սրանում ե մեր Կարմիր Բանակի ուժի ու հզորության յերկրորդ և հիմնական



աղբյուրը: Սրանումն ե այն բանի գրավականը, վոր կրիտիկական մոմենտում մեր բանակը կգտնի մեր անծայրածիր յերկրում բնակվող բոլոր ու ամեն տեսակի ազգությունների միլիոնավոր մասսաների մեջ մեծագույն աջակցություն:

Կուսակցության ցանկությունները, նրա խնդիրը կայանում ե նրանում, վորպեսզի այս առանձնահատկությունը ևս պահպանվի ու ամրապնդվի մեր Կարմիր Բանակի համար:

Վերջապես, Կարմիր Բանակի յերրորդ առանձնահատկությունը: Այդ առանձնահատկությունը կայանում ե մեր ամբողջ Կարմիր Բանակը թափանցող ինտերնացիոնալիզմի վոգու մեջ, ինտերնացիոնալիզմի զգացմունքների մեջ: Կապիտալիստական յերկրներում բանակները սովորաբար դաստիարակվում են ատելության վոգով դեպի մյուս ժողովուրդները, ատելության վոգով դեպի մյուս պետությունները, ատելության վոգով դեպի մյուս յերկրների բանվորները ու գյուղացիները: Ի՞նչի համար ե արվում այս: Նրա համար, վորպեսզի պետությունների միջև, տերությունների միջև, յերկրների միջև ռազմա-

կան ընդհարումներ ծագելու դեպքում բանակը վերածվի հլու-հնազանդ մի հոտի: Սրանում է կապիտալիստական բոլոր բանակների թուլության աղբյուրը: Մեր Բանակը կառուցված է բոլորովին այլ հիմունքների վրա: Մեր Կարմիր Բանակի ուժը, ընկերնե՛ր, կայանում է նրանում, վոր նա իր ծննդյան առաջին իսկ որից դաստիարակվում է ինտերնացիոնալիզմի ոգով, դեպի մյուս ժողովուրդները հարգանք տածելու ոգով, դեպի բոլոր յերկրների բանվորները սեր և հարգանք ունենալու ոգով, յերկրների միջև խաղաղություն պահպանելու ու հաստատելու ոգով: Յեվ հենց այն պատճառով, վոր մեր բանակը դաստիարակվում է ինտերնացիոնալիզմի ոգով, բոլոր յերկրների բանվորների շահերի միասնության ոգով, հենց այդ պատճառով նա, մեր բանակը, հանդիսանում է վորպես համաշխարհային հեղափոխության բանակ, վորպես բոլոր յերկրների բանվորների բանակ: Յեվ այն բանը, վոր այս հանգամանքն է հանդիսանում վորպես մեր բանակի ուժի ու հզորության աղբյուր, այդ բանը յերբեվիցե կիմանան բոլոր յերկրների բուրժուա-



ները, յերբ նրանք սիրտ կանեն հարձակվել մեր յերկրի վրա, վորովհետև նրանք այն ժամանակ կտեսնեն, վոր ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակված մեր Կարմիր Բանակը անթիվ քանակությամբ բարեկամներ ու դաշնակիցներ ունի աշխարհի բոլոր մասերում, Շանհայից մինչև Նյու-Յորկ, Լոնդոնից մինչև Կալկուտտա:

Ահա, ընկերնե՛ր, այն յերրորդ հիմնական առանձնահատկությունը, վոր թափանցում է մեր բանակի հոգին և ստեղծում նրա ուժի ու հզորության աղբյուրը:

Կուսակցության ցանկությունները, նրա խնդիրը կայանում է նրանում, վոր այս առանձնահատկությունն ևս պահպանվի ու ամրապնդվի մեր բանակի համար:

Այս յերեք առանձնահատկություններին մեր բանակը պարտական է նրանով, վոր նա գիտե, թե ուր է գնում—նրանով, վոր նա կազմված է վոչ թե անգետ զինվորներից, այլ գիտակից մարդկանցից, վորոնք հասկանում են, թե ուր պետք է գնալ և հանուն ինչի մարտնչել:

Իսկ այն բանակը, վոր հասկանում է, թե ինքը հանուն ինչի յե մարտնչում, անհաղթելի յե, ընկերնե՛ր:

Ահա թե ինչու մեր Կարմիր Բանակը աշխարհում ամենալավ բանակը լինելու բոլոր հիմքերն ունի:

Կեցցե՛ մեր Կարմիր Բանակը:

Կեցցե՛ն նրա մարտիկները:

Կեցցե՛ն նրա ղեկավարները:

Կեցցե՛ պրոլետարիատի դիկտատուրան, որը Կարմիր Բանակ է ծնել, նրան հաղթանակ է տվել և նրան փառքով է պսակել:

(ԲՈՒՌՆ, ՅԵՐԿԱՐԱՏԵՎ ԽԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):



# ԶԻՆՎՈՐԱԿԱՆ ՅԵՐԴՈՒՄԸ

Ես, Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության քաղաքացիս, մտնելով Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի շարքերը, յերդում եմ տալիս և հանդիսավոր կերպով յերդվում եմ լինել ազնիվ, անվեհեր, կարգապահ, զգաստ մարտիկ, խստորեն պահել ռազմական և պետական գաղտնիքը, անառարկելիորեն կատարել զինվորական բոլոր կանոնադրությունները և հրամանատարների, կոմիսարների ու պետերի հրամանները:

Ես յերդվում եմ բարեխղճորեն ուսումնասիրել զինվորական գործը, ամեն կերպ պահպանել զինվորական ու ժողովրդական գույքը և մինչև վերջին շունչը նվիրված լինել իմ ժողովրդին, իմ Խորհրդային Հայրենիքին և Բանվորա-Գյուղացիական Կառավարությանը:

Ես միշտ պատրաստ եմ Բանվորա-Գյուղացիական Կառավարության հրամանով դուրս գալ պաշտպանելու իմ Հայրենիքը Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը և, որպես Բանվորա- Գյուղացիական Կարմիր Բանակի մարտիկ, ես երդվում եմ պաշտպանել այն արիաբար, հմտորեն, արժանապատվությամբ ու պատվով, չխնայելով իմ արյունը և կյանքն իսկ՝ թշնամիների վրա լիակատար հաղթության հասնելու համար:

Իսկ եթե չար դիտավորությամբ ես խախտեմ իմ այս հանդիսավոր երդումը, ապա թող ես արժանանամ խորհրդային օրենքի խիստ պատժին, աշխատավորության ընդհանուր ատելությանը և արհամարհանքին:



## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑ

# ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՐՈՍԱԿԱՆ ԲԱՆԱԿԸ

*Մոտենում է բանվորա-գյուղացիական Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի 21-ամյակը: Խորհրդային Միության ժողովուրդները մեծագույն ուրախությամբ և հպարտությամբ են դիմավորում այդ տոնը: 1939 թվի փետրվարի 23-ին, իր պանծալի տարեդարձի օրը, Կարմիր Բանակը կերդվի հավատարիմ լինել իր ժողովրդին, իր հայրենիքին: Այդ օրը համաժողովրդական տոն կլինի: Սոցիալիզմի բանակը նորից ամբողջ աշխարհի առաջ*

կցուցադրի իր ուժն ու հզորությունը, իր նվիրվածությունը Լենինի–Ստալինի գործին։

## ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԸ — ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱԶԱՏԱԳՐՄԱՆ ԲԱՆԱԿ Է

Մեր բանակն ուժեղ է ժողովրդի հետ ունեցած իր անխախտ կապով։ Կարմիր Բանակը—այդ ազատագրված ժողովրդի բանակն է, սոցիալիստական հեղափոխության բանակը։ Նա պահպանում է ԽՍՀՄ ժողովուրդների հեղափոխական նվաճումները։

«...Մեր Կարմիր Բանակն այն առանձնահատկությունն ունի, որ նա հանդիսանում է բանվորների ու գյուղացիների իշխանության հաստատելու զենք, պրոլետարիատի դիկտատուրա հաստատելու զենք, բանվորներին և գյուղացիներին կալվածատերերի ու կապիտալիստների լծից ազատագրելու զենք։ Մեր բանակն աշխատավորության ազատագրման բանակն է» (Ի. Ստալին,



«Կարմիր Բանակի յերեք առանձնահատկությունների մասին» եջ՝ 4–5)։

Խորհրդային Միության մեջ ժողովուրդն ու բանակը կազմում են մեկ ընտանիք։ Կարմիր Բանակը վայելում է ԽՍՀՄ աշխատավորության ջերմ սերն ու հարգանքը։

«Կարմիր Բանակը ժողովրդի զավակն է, և յեթե նա հավատարիմ է իր ժողովրդին, ինչպես հավատարիմ զավակն իր մորը, նա կվայելի ժողովրդի ոժանդակությունը, նա պետք է հաղթի։ Իսկ իր ժողովրդի դեմ ընթացող բանակը պետք է պարտություն կրի»*)։

Կարմիր Բանակն արմատապես տարբերվում է բոլոր մյուս գոյություն ունեցած և գոյություն ունեցող բանակներից։ Այդ նոր տիպի բանակ է, որի նմանը դեռևս չի տեսել մարդկության պատմությունը։

«...Պատմության մեջ առաջին անգամ բանվորներն ու գյուղացիներն ստեղծեցին իրենց սեփական բանակը, որը ծառայում է վոչ թե տերերին, այլ նախկին ստրուկներին, ներկայումս ազատագրված բանվորներին ու գյուղացիներին։

Ահա թե վորտեղ է մեր Կարմիր Բանակի

*) «Համ Կ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց», եջ՝ 336։

ուժի աղբյուրը»*)։

Քաղաքացիական պատերազմի տարիներին ՍՍՀՄ ժողովուրդներն աջակցում էին չահագործողների լծից բանվորների և գյուղացիների ազատագրության համար պայքարող Կարմիր Բանակին, վորովհետև այդ բանակն ազատագրություն էր բերում բոլոր ազգությունների աշխատավորներին։

Կարմիր Բանակը դաստիարակված է ինտերնացիոնալիզմի վոգով, բոլոր ժողովուրդների նկատմամբ բարեկամության և հարգանք տածելու վոգով։ Նա միլիոնավոր ու միլիոնավոր բարեկամներ ու դաշնակիցներ ունի աշխարհի բոլոր մասերում։ Նա հանդիսանում է համաշխարհային հեղափոխության բանակը։

## ԼԵՆԻՆԸ ՅԵՎ ՍՏԱԼԻՆԸ—ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆԵՐՆ ՈՒ ԱՌԱՋՆՈՐԴՆԵՐՆ ԵՆ

Կարմիր Բանակն ուժեղ է իր շարքերի միասնությամբ, յերկաթյա կարգապահությամբ, անձնազոհությամբ և նվիրվածությամբ դեպի պրոլետարական գործը։ Այդ հատկությունները կոփել է բոլշևիկյան կուսակցությունը— խորհրդային յերկրի բանակի ղեկավարն ու դաստիարակիչը։

«...Մեր հաղթանակների կազմակերպչի բարձր պատիվը պատկանում է... մեր յերկրի առաջավոր բանվորների մեծ կոլեկտիվին— Ռուսաստանի կոմունիստական կուսակցությանը»*)։

Բոլշևիկները կռվում էին Կարմիր Բանակի առաջին շարքերում, արիության, մարտական խիզախության և հեղափոխության գործին նվիրվածության օրինակներ ցույց տալով։ Բոլշևիկյան կոմիսարները բացառիկ անձնազոհություն և հերոսություն ցուցաբերելով, իրենց հետևից տանում էին բոլոր մարտիկներին։ Նրանք «իրենց աշխատանքով ցեմենտում էին կարմիր բանակայինների շարքերը, արմատացնում էին նրանց մեջ դիսցիպլինայի ու մարտական քաջարիության վոգին, յեռանդագին, արագ ու անողոքաբար կասեցնում էին հրամանատարական կազմի առանձին անձերի դավաճանական գործողու

*) Ի. Ստալին, «Կարմիր Բանակի յերեք առանձնահատկությունների մասին», էջ 5։



*) Ի. Ստալին, «Հոկտեմբերյան հեղափոխության մասին», հոդվածներ և ճառերի ժողովածու, էջ 60։

թյունները և, ընդհակառակը, համարձակորեն ու վճռականորեն պաշտպանում էին կուսակցական ու վոչ կուսակցական այն հրամանատարների հեղինակությունն ու համբավը, վորոնք ցույց էին տվել իրենց նվիրվածությունը խորհրդային իշխանությանը և ընդունակ էին հաստատ ձեռքով առաջ տանելու Կարմիր Բանակի զորամասերի ղեկավարությունը։

«Առանց զինկոմի մենք Կարմիր Բանակ չէյինք ունենա»—ասում էր Լենինը»*)։

Պրոլետարական հեղափոխության թշնամիների վրա տարված հաղթանակներն անխզելիորեն կապված են Լենինի և Ստալինի —Կարմիր Բանակի կազմակերպիչների և առաջնորդների— անունների հետ։ Լենինի և Ստալինի ղեկավարությամբ Կարմիր Բանակը հաղթականորեն ավարտեց քաղաքացիական պատերազմը։ Լենինը և Ստալինը—խորհրդային հանրապետության զինված ժողովրդի հերոսական հաղթանակների վոգեշնչողներն են։

Կարմիր Բանակի հաղթանակներն ապահովվեցին Լենինի հանճարեղ տակտիկայով

*) «Համ Կ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց», էջ 238։



և ստրատեգիայով։

«Կուսակցական հաստատուն ղեկավարությունն այնպիսի հանճարեղ ստրատեգի և տակտիկի ձեռքերում, վորպիսին էր Իլյիչը, հանդիսացավ մեր հաղթանակի առավել կարեվոր պատճառներից մեկը»։ (Վորոշիլով)։

Լենինի հետ ձեռք–ձեռքի, Կարմիր Բանակի հաղթանակները կազմակերպում էր ընկեր Ստալինը, Լենինի հավատարիմ զինակիցը, պրոլետարական հեղափոխության հանճարեղ զորավարը, «...վորին Կենտրոնական Կոմիտեն մեկ ռազմական ճակատից ուղարկում էր մյուսը, ընտրելով հեղափոխության համար առավել վտանգավոր, առավել սարսափելի տեղերը... Նա ամբողջ գիշերներ չէր քնում, նա կազմակերպում էր, նա իր հաստատուն ձեռքերն էր վերցնում ղեկավարությունը, նա ջարդում էր, անողոք էր և բեկումն ստեղծում, առողջացնում էր իրադրությունը»*)։

Լենինը բազմիցս մատնանշել է, վոր Կարմիր Բանակի ամրապնդումը հանդի–

*) Կ. Ցե. Վորոշիլով «Ստալինը և Կարմիր Բանակը» էջ 4։

սանում է բոլշևիկյան կուսակցության կարևորագույն խնդիրը: Լենինի գործի հանճարեղ շարունակող ընկեր Ստալինը լենինյան այս օրերին մեծ յերդում տվեց ուժերը չխնայելով ամրապնդել մեր Կարմիր Բանակը, մեր Կարմիր Նավատորմը: Առաջնորդի յերդումը կենսագործված է կյանքում:

## ՀԶՕՐ ՅԵՐԿՐԻՆ—ՀԶՕՐ ԲԱՆԱԿ

Մեր Կարմիր Բանակն աճել ու ամրապնդվել է ամբողջ յերկրի հետ: Խորհրդային Միությունն ստալինյան հնգամյակների տարիներին դարձավ ինդուստրիալ հզոր պետություն: Սոցիալիստական արդյունաբերությունն առաջնակարգ ռազմական տեխնիկայով զինեց Կարմիր Բանակին:

«...Թույլ և պաշտպանության համար անպատրաստ յերկրից Խորհրդային Միությունը վերածվեց պաշտպանունակության տեսակետից հզոր յերկրի, մի յերկրի, վորը պատրաստ է ամեն տեսակ պատահականությունների հանդեպ, մի յերկրի, վորըն ընդունակ է մասսայական մասշտաբով արտադրելու պաշտպանության ժամանա-



կակից բոլոր զենքերը և մատակարարելու դրանք իր բանակին՝ արտաքին հարձակման դեպքում»*):

Բոլշևիկյան կուսակցությունը և Խորհրդային կառավարությունը հսկայական աշխատանք են կատարել Կարմիր Բանակի մարտունակությունն է՛լ ավելի բարձրացնելու համար: Այդ աշխատանքի շնորհիվ մեր Բանակը դարձել է առաջնակարգ, անպարտելի բանակ:

Կարմիր Բանակն այժմ հսկայական քանակությամբ ավտոմատիկ հրացաններ, ժամանակակից ղնդացրեր և բոլոր տիպի հրանոթներ, նորագույն տանկեր ու ինքնաթիռներ ունի:

Կարմիր Բանակն իր անխորտակելի հզորությունը ցուցադրեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության 21-րդ տարեդարձի օրը տեղի ունեցած տոնական զորահանդեսների ժամանակ: Այդ օրը մարտական ինքնաթիռների խիտ յերամները թռչում եյին Խորհրդային Միության քաղաքների վրայով:

«Մենք գիտենք,— հայտարարեց ընկեր Վորոշիլովը Կարմիր հրապարակում 1938

*) Ի. Ստալին «Լենինիզմի հարցերը» եջ 450:

թվի նոյեմբերի 7-ին արտասանած ճառում,— որ Խորհրդային Միությունն փուշ է հանդիսանում կապիտալիստական աշխարհի աչքում: Գիտենք նույնպես, որ մեր դեմ սրվում են համաշխարհային ֆաշիզմի սրերն ու թրերը: Սակայն մենք վախկոտներից չենք: Մենք հանգիստ և համառ կերպով կատարում ենք յերկրի մարտունակությունն ե՛լ ավելի ուժեղացնելու, մեր զինված ուժերի մարտական պատրաստությունն ե՛լ ավելի կատարելագործելու մեր աշխատանքը»:

Խորհրդային ժողովրդի թշնամիները, պատերազմի ֆաշիստական հրձիգները, գամառնիկների, տուխաչևսկիների և մյուս սրիկաների ռազմա-ֆաշիստական բանդան նյութում եր Կարմիր Բանակի պարտության պլաններ:

Խորհրդային ժողովուրդը, բոլշևիկյան կուսակցության և իր սիրելի առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ, ջախջախեց ֆաշիստական խմբերին և Բանակն ազատեց դավաճանների ու մատնիչների աղտեղությունից:

Անցյալ տարի Խասան լճի մոտ տեղի ունեցած մարտերում Կարմիր Բանակը գոր-



ծով ցույց տվեց իր մեծագույն ուժն ու հզորությունը: Երբ ճապոնական լկտիացած սամուրայները, հակառակ միջազգային պայմանագրերի, ուզում եյին Խասան լճի ռայոնում գտնվող խորհրդային տերիտորիայի մասը հայտարարել Մանչժոու-Գոյի տերիտորիա, և անցան խորհրդային սահմանը, նրանք խորտակիչ հարված ստացան: Կարմիր Բանակը չեչտակի հարվածով ճապոնական սամուրայներին ստիպեց իրենց փասա-փուսեն քաշել:

## ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿՈՒՄ—ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ՊԱՏՎԱՎՈՐ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆ Ե

Կարմիր Բանակը բոլշևիկյան, մարքսիստական-լենինյան դաստիարակության հիանալի դպրոց է: Կարմիր Բանակի մարտական տեխնիկան բազմապատկվում է մեր մարտիկների բարոյական սքանչելի հատկություններով: Մեր Կարմիր բանակայինները— դրանք իրենց հայրենիքի

գիտակից պաշտպաններ են, գրագետ, կուլտուրական խորհրդային քաղաքացիներ, վորոնք դաստիարակված են ինտերնացիոնալիզմի վոգով, ոժտված են հեղափոխական անսասան դիսցիպլինայով, անողոք են ժողովրդի թշնամիների հանդեպ: Նրանք անսահմանորեն նվիրված են բոլշևիկյան կուսակցությանը, Լենինի-Ստալինի մեծ գործին: Կուսակցությունը նրանց մեջ յերկաթյա աննկունություն և անխորտակելի տոկունություն է դաստիարակում: Կարմիր մարտիկները գիտեն, վոր նրանք պայքարում են կոմունիզմի մեծ գործի համար:

Խորհրդային մարտիկը պաշտպանում է իր ժողովրդական կարողությունը, իր ազատությունը: Ահա թե ինչու մեր հայրերն ու մայրերն իրենց զավակներին բանակ են ուղարկում, վոչ թե վշտով, վոչ թե արցունքներով, ինչպես այդ անում եյին մինչև հեղափոխությունը, այլ ուրախությամբ և հպարտությամբ: Ահա թե ինչու մեր խորհրդային յերիտասարդությունը Կարմիր Բանակ է գնում մեծ ցնծությամբ: Ընկնել ԲԳԿԲ շարքերը, դառնալ հրետանավոր, տանկիստ կամ ոդաչու— հարյուր



հազարավոր խորհրդային յերիտասարդ հայրենասերների նվիրական յերազն է: Զինվորական ծառայությունը Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի մեջ— բոլոր խորհրդային քաղաքացիների պատվավոր պարտականությունն է:

ԽՍՀՄ յուրաքանչյուր յերիտասարդ բանվոր, յերիտասարդ կոլտնտեսական և յերիտասարդ ինտելիգենտ ուրախությամբ և հպարտությամբ է մտնում Կարմիր Բանակի շարքերը, ձգտելով կատարել սրբազան պարտքը հայրենիքի հանդեպ: Զինվորական յերդման խոսքերով Կարմիր Բանակի յուրաքանչյուր մարտիկ հայտարարում է՝

«Յես միշտ պատրաստ եմ Բանվորա-Գյուղացիական Կառավարության հրամանով դուրս գալ պաշտպանելու իմ հայրենիքը— Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, և վորպես Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի մարտիկ, յես յերդվում եմ պաշտպանել այն արիաբար, հմտորեն, արժանապատվությամբ ու պատվով, չխնայելով իմ արյունը և կյանքն իսկ՝ թշնամիների

նկատմամբ լիակատար հաղթության հասնելու համար»։

Զինվորական ծառայողները ԽՍՀՄ-ում — խորհրդային լիիրավ քաղաքացիներ են։ Ստալինյան Սահմանադրության մեջ գրված է՝

«Կարմիր Բանակի շարքերում գտնվող քաղաքացիները, մյուս բոլոր քաղաքացիներին համահավասար, վայելում են ընտրելու և ընտրվելու իրավունք»։

Այդ իրավունքն իրականացվում է լիովին։ ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի մեջ սոցիալիզմի յերկրի ժողովուրդները 86 դեպուտատ են ընտրել Կարմիր Բանակից և Կարմիր Նավատորմից։ Մեր բանակն աշխարհում միակ բանակն է, վորն ապրում է իր յերկրի քաղաքական և հասարակական լիարյուն կյանքով։ Բուրժուական յերկրներում զինվորները զրկված են քաղաքացիական իրավունքներից։ Կապիտալիստական յերկրների որենքները բանակը դարձնում են հլու զենք տիրապետող դասակարգի— բուրժուազիայի ձեռքին։

Կարմիր Բանակը հանդիսանում է սոցիալիստական կուլտուրայի և սոցիալիստական լուսավորության դպրոց։ Մեզ մոտ



յուրաքանչյուր զորամասում մարտիկների, հրամանատարների, քաղաշխատողների համար կազմակերպված են ուսման բազմազան տեսակներ՝ ռազմական, քաղաքական և հանրակրթական։ Յերիտասարդ բանվորները, կոլտնտեսականները և ծառայողները Կարմիր Բանակի շարքերում ընդլայնում են իրենց քաղաքական մտահորիզոնը, բարձրացնում են իրենց կուլտուրական մակարդակը, ոգտակար գիտելիքներ են ձեռք բերում և գործարան, կոլտնտեսություն կամ հիմնարկություն են վերադառնում վորպես կուսակցական և վոչ կուսակցական բոլշևիկներ, ակտիվ աշխատողներ, մասսաների կազմակերպիչներ ու ղեկավարներ։

Կարմիր Բանակը յերիտասարդ մարդկանց մեջ դաստիարակում է նոր, սոցիալիստական մարդու հատկություններ՝ նվիրվածություն և հավատարմություն դեպի սոցիալիստական հայրենիքը, դեպի բոլշևիկյան կուսակցությունը և դեպի ժողովուրդների առաջնորդ ընկեր Ստալինը, արիություն, համարձակություն, խիզախություն, կարգապահություն, սկզբունքայնություն։

Կարմիր Բանակը դաստիարակապես կոփում է իր մարտիկներին, նրանց սովորեցնում է զգաստ և աչալուրջ լինել, պատրաստ լինել մերկացնելու ԽՍՀՄ թշնամիների բոլոր ոտնձգությունները: Բոլշևիկների կուսակցությունը, ընկեր Ստալինը մարտիկներին, հրամանատարներին, կոմիսարներին և քաղաշխատողներին տվին մարքսիստական-լենինյան դաստիարակության հզոր զենք—ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացը»:

## ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԸ—ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԵՐՈՍՆԵՐԻ ԲԱՆԱԿ Է

Կարմիր Բանակի ուժն ու հզորությունը մեր կարմիր բանակայինների, հրամանատարների և քաղաշխատողների անսահման հերոսության մեջն է: Կարմիր Բանակի հերոսները— խորհրդային ժողովրդի, Լենին-Ստալինի կուսակցության հավատարիմ զավակներն են: Նրանք յեղբայրական սիրո և բարեկամության անխորտակելի կապերով



կապված են ժողովրդական մասսաների հետ: Ժողովուրդը սիրում է իր հերոսներին, վորովհետև գիտե, վոր նրանք ծառայում են ժողովրդի գործին և նրա համար չեն խնայի իրենց կյանքը:

Ընկեր Ստալինը ԲԳԿԲ 10-ամյակին նվիրված իր ճառում ասել է՝

«Մեր Բանակն աշխարհում միակն է, վորը վայելում է բանվորների և գյուղացիների համակրանքն ու ոժանդակությունը: Դրա մեջ է նրա ուժը, դրա մեջ է նրա ամրությունը»:

Բանվորա- Գյուղացիական Կարմիր Բանակն անպարտելի յե, վորովհետև նա խորհրդային հայրենիքի համար գիտակցորեն և միաբան պայքարող ժողովրդական հերոսների բանակ է:

Քաղաքացիական պատերազմի հերոսական տարիներին մեր Կարմիր Բանակը կիսամերկ, կիսաքաղց և վատ սպառազինված, սակայն իր հեղափոխական վոգով և ժողովրդի անսահման աջակցությամբ ուժեղ, ջախջախեց սպիտակ գվարդիականների և ինտերվենտների հրոսակախմբերին?

«Կարմիր Բանակը հաղթեց այն պատճառով, վոր՝ ա) կարմիր բանակայինները

հասկանում էին պատերազմի նպատակներն ու խնդիրները և գիտակցում էին դրանց ճիշտ լինելը. բ) պատերազմի նպատակների ու խնդիրների ճշտությունը գիտակցելը նրանց մեջ ամրապնդում էր դիսցիպլինայի վոգին և մարտունակությունը. գ) այդ պատճառով կարմիր բանակային մասսաները թշնամիների դեմ մղվող պայքարում շարունակ ցուցաբերում էին անօրինակ անձնուրացություն և չտեսնված մասսայական հերոսություն»*):

Խորհրդային յերիտասարդ հանրապետության բազմաթիվ թշնամիների դեմ մղվող առասպելական մարտերում սոցիալիզմի գործի և իրենց հայրենիքի ազատության համար իրենց կյանքը զոհաբերեցին քաղաքացիական պատերազմի պանծալի հերոսներ՝ Կոտովսկին, Չապայեվը, Լազոն, Շչորսը, Պարխոմենկոն և մյուս անձնվեր հերոսները, վորոնց անունները հավիտյան կապրեն ժողովրդի սրտերում: Հարյուրավոր և հազարավոր այդպիսի հերոսներ պայքարել են Խորհրդային Իշխանության համար և իրենց կրծքով հետ են մղել թշ-

*) «Համ Կ(բ)Կ Պատմության համառոտ դասընթաց», էջ 336_337:



նամու հարվածները:

Խասան լճի ռայոնում ճապոնական հափշտակիչների դեմ մղվող մարտերում Կարմիր Բանակը հերոսության հրաշքներ ցույց տվեց: Կարմիր Բանակի մարտիկները, բոլշևիկյան կուսակցության սաներն իրենց ժողովրդի յերջանկության մասին մտածելով և Ստալինի անունը շուրթներին, հզոր լավայով շարժվեցին թշնամու վրա և ջախջախեցին նրան:

Մեր հայրենիքի բազմաթիվ զավակներին, սխրագործության, խիզախության, քաջության համար խորհրդային կառավարությունը տվել է Խորհրդային Միության Հերոսների կոչում: Հերոսների այդ պանծալի ընտանիքում էր նաև Վալերի Չկալովը, մեր ժամանակի մեծագույն օդաչուն, վորը 1938 թվի դեկտեմբերի 15-ին զոհվեց նոր ինքնաթիռ փորձարկելու ժամանակ: Չկալովը հիանալի քաջարիության և իր ժողովրդին հավատարիմ լինելու օրինակ էր: Նա սիրում էր իր ժողովրդին և ատում էր նրա թշնամիներին:

Կարմիր Բանակի հերոսներն աչքի յեն ընկնում վոչ միայն համարձակությամբ և խիզախությամբ, այլև իրենց գործի գե-

բաղանց դիտությամբ:

«Համարձակությունը և խիզախությունն այդ հերոսության միայն մի կողմն է: Մյուս վոչ պակաս կարեվոր կողմը— այդ հմտությունն է: Համարձակությունը, ասում է քաղաքներ է վերցնում: Սակայն այդ միայն այն ժամանակ, յերբ համարձակությունը, խիզախությունը, ռիսկի պատրաստակամությունը շաղկապվում են հիանալի գիտելիքների հետ»: (Ստալին):

Դրա համար էլ Կարմիր Բանակի մարտիկներն անդուլ կերպով լրացնում են իրենց գիտելիքները, տիրապետում են նոր տեխնիկային, համառ կերպով ձգտում են հասնել բարձր վարպետության:

## ՅԵԹԵ ՎԱՂԸ ՊԱՏԵՐԱԶՄ ԼԻՆԻ...

Կարմիր Բանակի ուժն ու հզորությունը բոլշեվիկների կուսակցության և խորհրդային կառավարության լենինյան-ստալինյան ճիշտ քաղաքականության մեջ է: Խորհրդային Միությունն աշխարհում միակ յերկիրն է, վորն անդավաճանորեն և հետեվողականորեն խաղաղության քաղաքականություն է վարում:



Դրա հետ միասին խորհրդային ժողովրդի բանակն արթուն կերպով պահպանում է հեղափոխության նվաճումները: Վ. Ի. Լենինը մեզ կտակել է պահպանել և ամրապնդել մեր յերկրի պաշտպանունակությունը:

«Ձեռնամուխ լինելով մեր խաղաղ շինարարությանը, մենք բոլոր ուժերը գործ կդնենք այն անընդհատ շարունակելու համար: Միևնույն ժամանակ, ընկերնե՛ր, արթուն յեղեք, աչքի լույսի պես պահպանեցեք մեր յերկրի և մեր Կարմիր Բանակի պաշտպանունակությունը...»*):

Մի շարք ֆաշիստական յերկրներ՝ Գերմանիան, Իտալիան, Ճապոնիան— այժմ հանցագործ, հափշտակողական պատերազմներ են մղում Իսպանիայում և Չինաստանում: Այդ յերկրների ֆաշիստական կառավարող շրջանները հանուն բացահայտ թալանի ու հափշտակության, հանուն ազատասեր ժողովուրդների ստրկացման ու կողոպտման, աշխարհը մտցրել են նոր իմպերիալիստական սպանդի մեջ:

«Պետություններն ու ժողովուրդները մի տեսակ աննկատելիորեն սահել են դեպի

*) Լենին, հատոր 27, եջ 120:

յերկրորդ իմպերիալիստական պատերազմի օրբիտը: Աշխարհի զանազան ծայրերում պատերազմն սկսել են 3 ագրեսիվ պետություններ,— Գերմանիայի, Իտալիայի, Ճապոնիայի ֆաշիստական ղեկավար շրջաններն: Պատերազմը մղվում է հսկայական տարածության վրա՝ Ջիբրալտարից մինչև Շանհայ: Պատերազմն արդեն կարողացել է իր օրբիտի մեջ քաշել կես միլիարդից ավելի բնակչություն»*):

Ֆաշիստական յերկներն արդեն վաղուց պատերազմ են պատրաստում Խորհրդային Միության դեմ: Սկսված յերկրորդ իմպերիալիստական պատերազմի սուր կողմն, անկասկած, ուղղված է մեր յերկրի դեմ:

Սակայն թշնամիները մեզ հանկարծակիի չեն բերի: Մենք հաստատ կերպով հիշում ենք ստալինյան խոսքերը կապիտալիստական շրջապատման, մոբիլիզացիոն պատրաստության մասին: Ընկեր Ստալինն ընկեր Իվանովին ուղղած նամակում գրում է՝

«...Հարկավոր է ամեն կերպ ուժեղացնել և ամրապնդել մեր Կարմիր Բանակը, Կարմիր Նավատորմը, Կարմիր Ավիացիան,

*) «Համ Կ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց», եջ՝ 452:



Պաջը– Ավիաքիմը: Հարկավոր է մեր ամբողջ ժողովուրդը մոբիլիզացիոն պատրաստության վիճակում պահել ռազմական հարձակման վտանգի դեմ հանդիման, վորպեսզի վոչ մի «պատահականություն» և մեր արտաքին թշնամիների վոչ մի ֆոկուս չկարողանան մեզ հանկարծակիի բերել...»:

Խորհրդային ժողովուրդը հանդիսանում է Կարմիր Բանակի անսպառելի ռեզերվը: «Հայրենիքի պաշտպանությունը ԽՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է»,— այսպես է ասված Ստալինյան Սահմանադրության մեջ: Յեվ խորհրդային քաղաքացիները տիրապետում են ռազմական գիտելիքներին: Միլիոնավոր Խորհրդային բոցավառ հայրենասերներ միավորված են Պաջը–Ավիաքիմի ժողովրդական հզոր կազմակերպության մեջ: Պաջը– Ավիաքիմականներն ամեն օր ուսումնասիրում են ռազմական գործը, յուրացնում են ժամանակակից մարտական տեխնիկան: Պաջը– Ավիաքիմական բազմաթիվ դպրոցները, աերո– ակումբները և հրաձգային թիմերը, գնդացրորդների, նռնաձիգների, հեծյալների, հրետանավորների խմբակները,

*հակաօդային և հակաքիմիական պաշտպանության ջոկատները պատրաստում են սոցիալիստական հայրենիքի կայուն, հմուտ, անվեհեր և գիտակից պաշտպաններ:*

*Խորհրդային ժողովուրդը և նրա Կարմիր Բանակն արթուն կերպով պահպանում են սոցիալիզմի մեծ նվաճումները, իրենց սրբազան հայրենիքը և վոչ վոքի ու յերբեք թույլ չեն տա վոտնձգություն անելու նրա նկատմամբ:*

*«Մենք կպատասխանենք Խորհրդային Միության դեմ պատերազմի հրձիգների, ագրեսորների ուղղած ամեն մի պրովակացիոն յելույթին,— լինի այդ արեվմուտքում թե արևելքում,— Յուրաքանչյուր հարվածին մենք կպատասխանենք պատերազմի հրրձիգների և պրովակատորների դեմ ուղղված յերկակի, յեռակի հարվածով»* (Վ. Մ. Մոլոտով, *«Հոկտեմբերյան հեղափոխության 21-րդ տարեդարձը»: Զեկուցում Մոսկվայի խորհրդի հանդիսավոր նիստում*, 1938 *թվի նոյեմբերի* 6-*ին*, *եջ* 16):

*Մենք ակտիվ պաշտպանության կողմնակից ենք: Կարմիր Բանակի պաշտպանությունը հարձակումն է:*

*Յեվ յեթե թշնամին հարձակվի Խորհրդային Միության սրբազան սահմանների վրա, Կարմիր Բանակը ջնջախիչ հարձակում կգործի թշնամու վրա, նա կանցնի թշնամական յերկրի սահմանները և հզոր լավայով կշարժվի հակառակորդների տերիտորիայի վրա:*

*«Մեր Բանակը,— ասում է ընկեր Վորոշիլովը,— գոյություն ունի վոչ թե հարձակման համար, սակայն միայն մինչև թշնամու կողմից մեր հայրենիքի վրա հարձակվելու մոմենտը: Նա կլինի ամենահարձակողականը բոլոր յերբեվիցե հարձակված բանակներից, յեթե թշնամին նրան հարկադրի այդ անել»:*

*Կարմիր Բանակը թշնամուն կջախջախի նրա տերիտորիայում: Այդ կլինի բոլոր ազատագրական պատերազմներից ամենաարդարացին: Նա կարժանանա ամբողջ աշխարհի աշխատավորության համակրանքին: Սոցիալիզմի մեծ յերկրի վրա սուր բարձրացնողը կկործանվի Կարմիր Բանակի սրով:*

# ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՈՐԻՆԱԿԵԼԻ ԹԵՄԱՆԵՐ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՅԵՎ ՌԱԶՄԱ—ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ 21-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ

## 1. ՀԱՄ Կ (Բ) Կ—ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆ ՈՒ ԱՌԱՋՆՈՐԴ

*ա) Լենինն ու Ստալինը պրոլետարական դիկտատուրայի զինված ուժերի կազմակերպման մասին:*

*բ) Խորհրդային Ռուսաստանի արտաքին ու ներքին դրությունը* 1918 *թվականի սկզբին և անցումը Կարմիր Գվարդիայից ու հեղափոխական պարտիզանական ջոկատներից դեպի կանոնավոր Կարմիր Բանակի-պրոլետարիատի դիկտատուրայի բանակի-ստեղծումը:*



*գ) Լենինյան դեկրետներ Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակ և Կարմիր Նավատորմ կազմակերպելու մասին:* 1918 *թվականի փետրվարի* 23*-ը գերմանական իմպերիալիզմի զորքերին հակահարված տալու օրը— Կարմիր Բանակի ծննդյան օրն է:*

*դ) Լենինի— Ստալինի կուսակցությունը Կարմիր Բանակի ռազմաճակատի ու թիկունքի ղեկավար միջուկներ հայրենիքի ժողովրդական պատերազմում ընդդեմ ինտերվենտների ու սպիտակ— գվարդիանների* 1918–1920 *թվականներին:*

*յե) Լենինն ու Ստալինը Կարմիր Բանակի ու նրա մեծ հաղթանակների կազմակերպիչներն են: Լենինի ու Ստալինի ղեկավարությունը ինտերվենտների զորքի և ներքին հակահեղափոխության ջախջախման գործում՝ քաղաքացիական պատերազմների ռազմաճակատներում: Ընկեր Ստալինը— Կարմիր Բանակի հաղթանակների կազմակերպիչ՝ քաղաքացիական պատերազմների բոլոր վճռական ճակատամասերում:*

*զ) Կարմիր Բանակի հաղթանակի պայմաններն ինտերվենտների և հակահեղափոխության միացյալ ուժերի վրա՝ Ռուսաս—*

տանում: 1) Խորհրդային իշխանության ճիշտ, ժողովրդի շահերին համապատասխանող քաղաքականություն, հանուն վորի կռվեց Կարմիր Բանակը, 2) Կարմիր Բանակի մինչև վերջ իր ժողովրդին հանդեպ ունեցած հավատարմությունն ու նվիրվածությունը, 3) Կարմիր Բանակի ամուր թիկունքի առկայությունը, 4) Կարմիր բանակայինների կողմից պատերազմների նպատակն ու խնդիրները հասկանալը, կարմիր բանակային մասսաների կարգապահությունն ու չտեսնված հերոսականությունը, 5) բոլշևիկյան կուսակցության ղեկավարությունը ռազմաճակատում և թիկունքում, 6) Կարմիր Բանակը կոփեց նոր տիպի զինվորական ղեկավարներ: Հերոս–բնածին տաղանդներ Կարմիր Բանակի շարքերում, 7) Լենինի ու Ստալինի և նրանց զինակիցների աշխատանքը Կարմիր Բանակի քաղաքական լուսավորության գծով և զինվորական կոմիսարների գործունեությունը, 8) կուսակցականների և անկուսակցական բոլշևիկների աշխատանքն ընդհատակում, սպիտակ-գվարդիական բանակների թիկունքում, 9) վողջ աշխարհի պրոլետարիատի համակրությունն ու օգնու–



թյունը Խորհուրդների Յերկրին:

յե) ՀամԿ(բ)Կ— սոցիալիզմի յերկրի Կարմիր Բանակի ղեկավարն է: Տրոցկիստա-բուխարինական և բուրժուա-նացիոնալիստական ֆաշիստական բանդիտների ջախջախումն ու վոչնչացումը, վորոնք աշխատում էյին քայքայել Կարմիր Բանակի հզորությունը: Կարմիր Բանակի բոլշևիկացումը և կոմիսարների դերը:

ը) Ստալինը Կարմիր Բանակի մարտական ու քաղաքական հզորության ամրապնդման մասին:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. Վ. Ի. ԼԵՆԻՆ—Պրոլետարական հեղափոխության ռազմական ծրագիրը: Ժող. XIX հատ.:

2. Ի. ՍՏԱԼԻՆ—Ռուսական հեղափոխության հաղթանակի պայմանների մասին: Յերկերի ժողովածու՝ ՀամԿ(բ)Կ պատմության ուսումնասիրության շուրջը, հատ. I, էջ 790—792:

3. Ի. ՍՏԱԼԻՆ—Կարմիր Բանակի յերեք առանձնահատկությունների մասին:, Պետհրատ, 1938 թ.:

4. Կ. ՅԵ. ՎՈՐՈՇԻԼՈՎ—Ստալինն ու Կարմիր Բանակը: ՀամԿ(բ)Կ Կուսհրատ, 1938 թ.:

5. Կ. ՅԵ. ՎՈՐՈՇԻԼՈՎ—Բանվորա-Գյուղացիա–

կան Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի XX տարին։ Պետքաղհրատ, 1938 թ.։

6. Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ—Հոկտեմբերյան հեղափոխության 21-րդ տարեդարձը։ Պետքաղհրատ, 1938 թ.։

7. «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց»։ Գլ. VII, հատված 7, գլ. VIII։

8. Բանվորա-գյուղացիական Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի քսանամյակի շուրջը։ Թեզիսներ պրոպագանդիստների համար։ Համ. Կ(բ)Կ Կուսհրատ, 1938 թ.։

9. ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության հրամանագրերը զինվորական յերդումի մասին։ «Պրավդա», 4-ը հունվարի, 1939 թվականի։

## II. ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ ԽՍՀՄ-ՈՒՄ ՅԵՎ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՈՒ ՌԱԶՄԱ ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՀԶՈՐՈՒԹՅԱՆ ԱՃՈՒՄԸ

ա) Սոցիալիզմի հաղթանակը ԽՍՀՄ-ում և կապիտալիստական շրջապատումը։

բ) ԽՍՀՄ զինված ուժերի հզորության աճումը։ Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի բարձր մարտական ուսուցումը, ռազմա-տեխնիկական սարքինու-



թյունը և զինումը, մարտիկների, հրամանատարների, կոմիսարների և քաղաշխատողների՝ բոլշևիկյան գաղափարականությունը։

բ) Ռազմա-ֆաշիստական լրտեսների, դավաճանների և վարձու մարդասպանների տրոցկիստա-բուխարինական բանդաների վոչնչացումն էլ ավելի ամրապնդեց Կարմիր Բանակի անպարտելի հզորությունը և համախմբվածությունը Լենինի-Ստալինի մեծ կուսակցության շուրջը։

գ) Խորհրդային ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը և Կարմիր Բանակի անխզելի կապը խորհրդային ժողովրդի հետ։ Խորհրդային զենքի ջախջախիչ ուժը, Կարմիր Բանակի հերոսությունը, քաջությունը, մարտիկների, հրամանատարների և քաղաշխատողների հայրենասիրությունը, վորը փայլուն կերպով հանդես յեկավ ճապոնական զավթողների ջախջախման ժամանակ Խասան լճի մոտ։ Յեթե թշնամին համարձակվի հարձակվել մեզ վրա, ապա Կարմիր Բանակը կլինի յերբեվիցե հարձակվող բանակներից ամենահարձակվողը։

դ) Կարմիր Բանակի մարտական ու քաղա-

քական պատրաստության կատարելագործման անհրաժեշտությունը, անհաշտ պայքար մղելը ԲԳԿԲ-ի շարքերի բոլշևիկացման համար: Կոմիսարների դերը Կարմիր Բանակում:

ե) Ընկեր Ստալինը Կարմիր Բանակի յերեք առանձնահատկությունների և նրա ուժերի ու հզորության աղբյուրների մասին:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. Ի. ՍՏԱԼԻՆ—Կուսակցական աշխատանքի թերությունների և տրոցկիստական ու այլ յերկերեսանիների լիկվիդացիայի միջոցների մասին: Համ. Կ(բ)Կ Կուսհրատ, 1937 թ.:

2. Ընկ. Իվանովի նամակը և ընկ. Ստալինի պատասխանը: ՀամԿ(բ)Կ Կուսհրատ, 1938 թ.:

3. Ի. ՍՏԱԼԻՆ—Կարմիր Բանակի յերեք առանձնահատկությունների մասին: Պետհրատ, 1938 թ.:

4. Կ. ՑԵ. ՎՈՐՈՇԻԼՈՎ—Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի XX տարին: Պետքաղհրատ, 1938 թ.:

5. Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ—Հոկտեմբերյան հեղափոխության 21-րդ տարեդարձը: Պետքաղհրատ, 1938 թ.:

6. Կ. ՑԵ. ՎՈՐՈՇԻԼՈՎ—Ճառ Կարմիր Հրապա-



րակում՝ Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ հեղափոխության 21-րդ տարեդարձի օրը ԽՍՀՄ-ում: Զինհրատ, 1938 թ.:

7. ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի հրամանագիրը զինվորական յերդման մասին: «Պրավդա», 4-ն հունվարի, 1939 թ.:

## III. ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԸ—ՊԱՅՔԱՐԻ ԶԵՆՔ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՇՐՋԱՊԱՏՄԱՆ ԴԵՄ

ա) Յերկրորդ իմպերիալիստական պատերազմը և նրա վտանգը բոլոր ժողովուրդների և առաջին հերթին ԽՍՀՄ-ի համար:

բ) Ֆաշիստական ագրեսորների կողմից ռազմական հարձակման պատրաստությունը ԽՍՀՄ-ի վրա:

գ) Մեր վերաբերմունքը պատերազմների հանդեպ: Արդար և անարդար, զավթողական պատերազմներ:

դ) Մեր խնդիրները կապիտալիստական շրջապատման դեմ պայքարելու և ֆաշիստական ագրեսորների կողմից ԽՍՀՄ-ի վրա պատրաստվող հարձակման գործում:

ե) Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի մարտական հզորության ամրապնդումը, քաղաքական և մարտական

պատրաստության բարձրացումը, Կարմիր Բանակի և Կարմիր Նավատորմի կադրերի հեղափոխական զգոնության բարձրացումը:

գ) Զինվորական յերդման մեծ նշանակությունը:

յե) Հայրենիքի պաշտպանությունը ԽՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտականությունն է: Խնդիրներ՝ պաշտպանական աշխատանքների ուժեղացման բնագավառում և աշխատանքի կարգապահության ամրապնդումը ֆաբրիկներում, գործարաններում և հիմնարկություններում:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց»: Գլուխ VI, հատ. 3, գլ. XII, բաժ. I:

2. Ընկ. Իվանովի նամակը և ընկ. Ստալինի պատասխանը: ՀամԿ(բ)Կ Կուսհրատ, 1938 թ.:

3. Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ—Հոկտեմբերյան հեղափոխության 21-րդ տարեդարձը: Պետքաղհրատ, 1938 թ.:

4. Կ. Յե. ՎՈՐՈՇԻԼՈՎ—Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի 20-րդ տարին: Պետքաղհրատ, 1938 թ.:



5. Կ. Յե. ՎՈՐՈՇԻԼՈՎ—Ճառ Կարմիր հրապարակում՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության 21-րդ տարեդարձի տոնին՝ ԽՍՀ Միությունում: Զինհրատ, 1938 թ.:

6. Կուսակցական պրոպագանդայի դրվածքի մասին՝ «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացի» հրատարակման կապակցությամբ: Պետքաղհրատ, 1938 թ.:

7. ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության հրամանագիրը զինվորական յերդման մասին, «Պրավդա», 4-ն հունվարի, 1939 թվականի:

8. Աշխատանքային կարգապահության կարգավորման, պետական սոցիալական ապահովագրության պրակտիկայի բարելավման և այդ գործում չարաշահումների դեմ պայքարելու միջոցառումների մասին: ԽՍՀՄ Ժողկոմխորհի, ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի և ՀԱՄԿԼԿ-ի վորոշումը: Պետքաղհրատ, 1938 թ.:

## IV. ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԻ ՅԵՐԿՐԻ ԶԻՆՎՈՐԱԿԱՆ ՅԵՐԴՈՒՄԸ

ա) Ստալինյան Սահմանադրությունը զինվորական ծառայության մասին Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակում և հայրենիքի պաշտպանության մասին:

բ) Զինվորական յերդման բովանդակու-

թյունը՝ 1) հանդիսավոր երդում՝ լինել ազնիվ, խիզախ, կարգապահ, զգաստ մարտիկ, խստորեն պահպանել զինվորական ու պետական գաղտնիքը, անվերապահորեն կատարել բոլոր զինվորական կանոնադրությունները և հրամանատարների, կոմիսարների ու պետերի հրամանները, 2) բարեխղճորեն ուսումնասիրել ռազմական գործը, ամեն կերպ պահպանել զինվորական ու ժողովրդական գույքը՝ մինչև վերջին շունչը, հավատարիմ, նվիրված լինել իր ժողովրդին, իր Խորհրդային Հայրենիքին և Բանվորա- Գյուղացիական Կառավարությանը, 3) միշտ պատրաստ լինել Բանվորա-Գյուղացիական Կառավարության հրամանին հանդես գալու ի պաշտպանություն իր հայրենիքի, պաշտպանել այն հերոսաբար, ճարպկորեն, արժանավայել ու պատվով, չխնայելով իր արյունն ու կյանքն իսկ թշնամու վրա լիակատար հաղթանակ ձեռք բերելու համար:

գ) Զինվորական երդում ընդունելու կարգը: 1939 թվի փետրվարի 23-ը— Բանվորա- Գյուղացիական Կարմիր Բանակի 21-րդ տարեդարձի օրը —վողջ Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակը, Բանվո-



րա- Գյուղացիական Ծովային Նավատորմը և սահմանային պահպանության զորքը երդում է տալիս: Յուրաքանչյուր երիտասարդ կարմիրբանակային, կարմիր նավատորմային և զինվորական ծառայողն անհատական կարգով ընդունում է զինվորական երդում և ամրացնում այն սեփական ձեռքով գրած ստորագրությամբ:

դ) Զինվորական երդման մեծ նշանակությունը, Խորհուրդների Երկրի զինվորների հավատարմության և անձնվիրության երդումն իրենց ժողովրդին, իրենց Սոցիալիստական Հայրենիքին և Բանվորա-Գյուղացիական Կառավարությանը՝ մեծ նշանակությունը:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. Ի. ՍՏԱԼԻՆ—Կարմիր Բանակի երեք առանձնահատկությունների մասին: Պետհրատ, 1938 թ.:

2. Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրությունը (հիմնական օրենք): ՀամԿ(բ)Կ Կուսհրատ, 1938 թ.:

3. ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության

հրամանագրերը զինվորական երդման մասին, «Պրավդա», 4-ն հունվարի, 1939 թվականի։

Կ. Կ. ՑԵ. ՎՈՐՈՇԻԼՈՎ—Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի 20-րդ տարին։ Պետքաղհրատ, 1938 թ.։

---





Գլավլիտի լիազոր Բ. 1674
Պատվեր № 127 Տիրաժ 9282
Հանձնված է արտադրության 8 փետրվարի 1939 թ.։
Ստորագրված է տպագրության 16 փետր., 1939 թ.

Հայկական ԽՍՀ Ժողկոմխորհի հրատարակչություն,
տպ. Հայպետհրատ-ի տպարան, Երևան

